Ա. ԴԱՐԲՆԻ

ՆԿ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ



## ՓՈՔՐԻԿ ՁԿՆՈՐՍԸ

Դե, ծանոթացեք,
Ա՛յ, մեր հերոսը,
Իր գյուտով հայտնի՝
Փոքրիկ ձկնորսը։
Տատի մախաթը
Առել է, փախել,
Թելից բռնել է,
Ջրի մեջ կախել։
Ալիքների տակ
Մախաթն է լողում
Ձկնորսի սիրտը
Այնպե՛ս է դողում
Վաղ առավոտից
Խեղճը չի խոսում.
Տատի մախաթով
Նա ձուկ է որսում։



ՀԼԿԵՄ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՄԱՆԿԱԿԱՆ
ԱՄՍԱԳԻՐ




№ 8 1957 թ.
ՕԳՈՍՏՈՍ
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
29-ՐԴ ՏԱՐԻ



Շ. ԹԱԹԻԿՅԱՆ Նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ

Երկրորդ գլուխ

## ՄԻ ԵՐՐՈՐԴ ԸՆԿԵՐ Է ՄԻԱՆՈՒՄ: ԶԱՎԵՆԻ ԼԵՌԸ:

*Հաջորդ օրը, Վարդանը ընկերոջ հետ հանդիպելով, առաջին հերթին հայտարարեց.*

*— Հայրիկս ասաց, որ դա խոշոր հայտնագործություն է:*

*— Ի՞նչը:*

*— Անմարդաբնակ կղզի գտնելը:*

*— Ի՞նչ: Ուրեմն դու նրան ամեն ինչ ասացի՞ր,— մի ակնթարթում զայրույթից կաս-կարմիր կտրած՝ նրա վրա գոռաց Երվանդը:*

*— Ոչ մի բան էլ չասացի, ինչու՞ ես գոռում,— շտապեց անտեղի մեղադրանքից արդարանալ Վարդանը և պատմեց, թե բանն ինչպես է եղել:*

*— Հա՞, ուրեմն, ոչինչ, համ էլ՝ հիմի տեսնու՞մ ես, որ քո հայրիկը աշխարհագրության դասատու է ու ինչ է ասել:*

*Այդ օրը Վարդանը մի կարևոր խնդիրք ուներ Երվանդին: Բանն այն է, որ Երվանդի բացակայության ընթացքում Վարդանը շատ էր մտերմացել իրենց դասընկերներից մեկի՝ Զավենի հետ: Մի ամսում նրանք սովորել էին համարյա ամեն օր հանդիպել, ամբողջ ազատ ժամանակը միասին անցկացնել ու հիմի Վարդանը դավաճանություն պես բան էր համարում մոտիկ ընկերոջը լքելը: Զավենին էլ պետք էր կանչել իրենց հետ ժամանակ անցկացնելու, խաղալու, թե չէ՝ կնեղանար: Բայց հնարավո՞ր էր ժամերով միասին լինել և իրարից գաղտնիք պահել: Այդ հարցի շուրջը խորհրդակցություն տեղի ունեցավ:*

*— Մեկ է, մեզ մի չորս-հինգ լավ տղաներ հարկավոր են,— ի վերջո իր կարծիքը հայտնեց Երվանդը,— դու նրան դեռ ոչինչ մի ասա, ես դեռ տեսնեմ ինչպես կլինի, հետո կասեմ: Բայց թող գա, կտեսնենք:*

*Զավենը նիհար, սուր դիմագծերով և բարի, մանրիկ աչքերով մի տղա էր: Նրա բարակ, մի քիչ երկար ու մի քիչ կոր քիթը կարծես ամենքին ասում էր. «Դուք բոլորդ լավ, ազնիվ ու ճշմարտախոս մարդիկ եք: Ես ամենքիդ էլ հավանում եմ և հավատում»...*

*Նրանց առաջին զրույցը տեղի ունեցավ Վարդանենց տանը, որտեղ իրենց ազատ էին զգում այդ օրը, քանի որ Վարդանը մենակ էր մնացել: Զավենին սուրգելը բավականին կարճ տևեց:*

*— Դու գաղտնիք պահել կարողանու՞մ ես,— հարցրեց նրան Երվանդը:*

*— Ե՞ս, ես ով գիտի մի միլիոն գաղտնիք գիտեմ: Զանազան գաղտնիքներ, որ ինձ ասել են, բայց ես ոչ ոքի չեմ ասել,— անմիջապես վրա տվեց Զավենը:*

*— Մի բան որ ասենք, ոչ ոքի չե՞ս ասի:*

*— Ե՞ս, ե՞ս, բա ես իսկի կասե՞մ որ, ես...*

*— Դե լավ, հավատում ենք,— կարճ կտրեց նրա խոսքը Երվանդը:— Դե ուրեմն, լսիր:*

*Չնայած որ սենյակում մարդ չկար, Երվանդը դարձյալ ամբողջ պատմությունն արտասանեց շշուկով: Զավենը՝ այդ հետաքրքրասեր և դյուրահավատ տղան, քիթը համարյա Երվանդի քթին էր կպցրել և ամբողջովին ուշադրություն դարձել, որպեսզի ոչ մի բառ բաց չթողնի, իսկ Վարդանը լարված հետևում էր Զավենի դեմքի արտահայտությանը, ստուգելու, թե պատմությունն ինչպիսի՞ տպավորություն է գործում նրա վրա: Իսկ երբ Զավենը վերջապես հասկացավ բանի էությունը, խանդավառությունից սկսեց պար գալ:*

*— Իսկ փոթորիկը սարսափելի չէ՞ր, առյուծից չվախեցա՞ր, կղզին շա՞տ մեծ է,— ասաց նա...— Բա հիմի ի՞նչ պիտի անես,— ի վերջո հարցրեց նա:*

---

Սկիզբը տես «Պիոներ» № 7 1957 թ.

— Միասին պիտի անենք, մենք երեքով,— ըշտապեց բացատրել Վարդանը։

— Իսկ ի՞նչ պիտի անենք,— նորից հարցրեց Զավենը։

Եվ ահա այստեղ արդեն գործի ամբողջ լրջությունը պարզաբանեց Երվանդը։ Հարկավոր է մեկ-երկու վստահելի տղաների էլ մասնակից անել։ Հարկավոր է հիմիկվանից պատրաստություններ տեսնել։ Երվանդը շատ գրքեր է կարդացել և ամենքից ավելի լավ գիտի, թե նման դեպքերում ինչ է հարկավոր անել։ Հարկավոր են մեխ, հագուստ, թուղթ, ամաններ, գործիքներ, զենք...

— Զե՞նք, ի՞նչ զենք, որտեղի՞ց...— հարցրեց Զավենը։

— Դե, զենք մենք ինքներս կպատրաստենք։

— Մենք ինքնե՞րս,— թերահավատությամբ հարցրեց Վարդանը։— Մենք ի՞նչ կարող ենք որ...

— Ինչու՞ չենք կարող։ Ես չեմ ասում հրացան կամ նման մի բան։ Մենք նետ ու աղեղ կպատրաստենք։

— Ոչ մի բան էլ չենք պատրաստի,— ձեռքը թափ տվեց Վարդանը։— Զենքը մեր ինչի՞ն է պետք։

— Ինչպե՞ս թե մեր ինչին է պետք, առյուծը մոռացա՞ք,— ասաց Երվանդը, բայց ընկերների հայացքներում սարսափի արտահայտություն նկատելով, անմիջապես խոսքը փոխեց։— Ասենք ինչո՞ւ առյուծ։ Անմարդաբնակ կղզիների առյուծներն անվնաս են մարդկանց համար, որովհետև նրանք մարդ չեն տեսել, չգիտեն, որ մարդիկ կարող են սպանել իրենց։ Բայց զենքը մեզ պետք է, որպեսզի ուտելու համար որս անենք,

— Հա՛, իհարկե,— համաձայնվեցին իսկույն ընկերները, իսկ Զավենն ավելացրեց.

— Հարկավոր է կարթ էլ ճարել։

— Պահեստը կլինի Երվանդենց տան հետևը, պատի տակ, էնտեղ մի փոքրիկ տեղ կպատրաստենք ու ինչ-որ ճարենք, էնտեղ կդասավորենք։

— Ամեն ինչ պատրաստելուց հետո կգնանք Կա-

պից ծովի ափը, նավակ կնստենք ու կգնանք մեր կղզին։

— Էնտեղ շատ գետեր ու լճեր կան,— անմիջապես Զավենին բացատրեց Երվանդը,— որը որ հավանես՝ կկոչենք քո անունով։ Օրինակ՝ Զավենի լճա։ Լավ է, չէ՞։

— Ես ամենից ավելի լիճ եմ սիրում,— հայտնեց Զավենը։— Կղզում լիճ կա՞։

— Չկա,— մի փոքր մտածելուց հետո ափսոսանքով ասաց Երվանդը։

Բայց այդ հայտնությունն առանձնապես վիշտ չպատճառեց։ «Զավենի լճա» էլ վատ չէր հնչում։

Երրորդ գլուխ

## ԱՐՇԱՎԱԽՄԲԻ ՊԱՏՐԱՍՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Երվանդը հայտարարեց, որ առաջին հերթին պետք է մի կարգին պահեստ շինել, ամուր պատերով, կողպեքավոր դռնով...



Տղաները գործի կպան։ Մի քանի օր տևեց, մինչև որ կարողացան գետից-գենից մեխ ու տախտակ, գործիքներ ճարել։ Սկզբում որոշել էին պատերը քարից պատրաստել, բայց երբ Զավենը իրենց նըկուղից հայտնաբերած երեք խոշոր արկղ բաշ տվեց բերեց, որոշեցին պահեստը տախտակից պատրաստել. այդպես համ ավելի հեշտ կլիներ, համ էլ՝ մաքուր, Նրանց աշխատանքին խանգարող չկար։ Երվանդի մայրը գոհ էր, որ տղան ընկերների հետ միասին առանց աղմուկ-աղաղակի, առանց սովորական չարություններ ինչ-որ գործով է զբաղվում։ «Էնպես, մեզ համար տնակ ենք սարքում»,— բացատրել էր նրան Երվանդը։

Բայց տնակն այնքան էլ հեշտ չկառուցվեց։ Մեկ մեխն էր վերջանում, մեկ ինչ-որ տախտակ էր պակասում, մեկ էլ մի քանի ծուռ կամ սխալ էին սարքում ու սկսում իրար հետ վիճել. թե ում մեղքով է այդպես ստացվել, բայց ընդհանրապես բավականին համերաշխ էին աշխատում։ Հատկապես շատ չարչարվեցին դռան վրա, որը ոչ մի կերպ չափին չէր գալիս։ Բայց դե, մեր հերոսներն էլ այնքան բծախնդիր չէին։ Նրանց համար կարևորն այն էր, որ մի փոքրիկ տեղ ունենան, ուր հավաքեն առաջիկա արշավախմբի համար անհրաժեշտ պարագաները։ Վերջիվերջո տնակը պատրաստվեց։ Այն նմանվում էր մի բավականին խոշոր, չնայած արտաքնապես ոչ այնքան էլ հրապուրիչ, շան բնի, որտեղ երեք ընկերները հնարավորություն ունեին մինչև անգամ՝ իրար շատ մոտիկ, կուչ եկած նստելու։

Էլ՛ ծիլ պայտ, էլ՛ հազար ու մի չափի ժանգոտած ու ծուռումուռ մեխեր, էլ՛ գործածությունից հանված դանակ, ջարդված սղոց, պահածոյի տուփեր, փչացած կողպեքներ ու ջարդված բանալիներ. մի խոսքով, տղաները ինչ որ գտնում՝ բաշ էին տալիս ու տեղավորում իրենց տնակում։

Երվանդը ամեն մի իր տեղավորելուց առաջ տնտղում էր, զննում խորին ուշադրությամբ, ասես ապագա արշավախմբի ամբողջ հաջողությունը կախված էր, հատկապես, օրինակի համար ասենք՝ այդ ջարդված ու ժանգոտված, անպետք պայտից։

— Պետք կգա,— ի վերջո հեղինակավոր տոնով հայտարարում էր նա։— Դե, անմարդաբնակ կղզու վրա մի կտոր երկաթ եթե պետք գա, որտեղի՞ց կճարենք։

— Հա՛, բա՛,— համաձայնվում էին Վարդանն ու Զավենը։— Ոչ մի տեղից էլ չենք կարողանա ճարել։

Արդեն սովորություն էր դարձել, որ նրանք իրենց համարյա ամբողջ օրը միասին անցկացնեին։ Ծնողներին մեծ դժվարությամբ էր հաջողվում որևէ գործի համար նրանց իրարից առանձնացնել։

Դե ծնողներին ի՞նչ։ Նրանք սովոր են իրենց երեխաներին միշտ շատ փոքրիկ համարել։ Ու՞մ մտքով կանցնի, որ շուտով, շատ շուտով Երվանդը, Վարդանն ու Զավենը աշխարհով մեկ պետք է հռչակեն իրենց խոշորագույն հայտնագործությունը։

Հիմա, մեկ էլ տեսար, նրանցից մեկն ու մեկին մայրը կամ հայրը հանդիմանում է.

— Սա ի՞նչ բան է, մի՞թե կարելի է ամբողջ օրը ինձ մի գլուխ խաղով զբաղվել։

Այդպիսի հանդիմանությունները մինչև անգամ վիրավորական էին։ Ախր, ինչ խաղի մասին է խոսքը, մի՞թե խաղ է կզզու հայտնագործությունը։ Վշտացած ու վիրավորված տղաները հավաքվում էին, դարդերը միմյանց պատմում։ Նրանք մխիթարվում էին ապագայի փայլուն հույսերով։ Երբ ամբողջ երկրով մեկ նրանց անունը կղղրդա, երբ ամենքը կտեսնեն, թե ինչպիսի հերոսներ են իրենք, և ծնողներն էլ՝ սիրո և զղջումի արցունքներն աչքներին, կգուրգուրեն, կփաղաքշեն իրենց, ապա... Ապա ի՞նչ...

— Էհ, մի խոսքով, կտեսնենք,— եզրակացնում էր Երվանդը ու ընկերներն էլ համաձայնում էին.

— Կտեսնենք։

Երբեմն մի ամբողջ օր նրանք խոսք չէին բաց անում իրենց կղզու մասին, մի բան, որ շատ քիչ էր պատահում, և այդպիսի դեպքերում միանում էին փողոցում ապրող մյուս ընկերներին, գնդակ խաղում, վազվզում կամ աննպատակ թափառում։ Ուրիշ երեխաների հետ եղած ժամանակ մեկ էլ տեսար՝ մեկն ու մեկը կռանում էր, որևէ բան վերցնում գետնից և գրպանում թաքցնելով, խորհրդավոր հայացքներ փոխանակում ընկերների հետ։ Նրանք իրար լավ էին հասկանում. այդ նշանակում էր, որ իրենց ընկերը գտել է մի բան, որը պետք էր գալու Ազեր կղզում։ Երբ առանձնանում էին, պարզվում էր, որ դա մի ծռված մեխ է, կամ ժանգոտված պտուտակ, կամ դրա նման մի բան։

— Լավ է, պետք կգա,— միաձայն եզրակացնում էին նրանք այդպիսի դեպքերում։

Հագուստի պաշար տղաները որոշել էին տեսնել հենց մեկնելու օրերին, հակառակ դեպքում, եթե տներում նկատեին, որ այս կամ այն հագուստը պակասում է, գլխի կընկնեին և աղմուկ կբարձրացնեին։

Ամենից դժվարը ուտելիքի հարցն էր։

— Հարկավոր են պահածոներ, պաքսիմատ և շոկոլադ,— բացատրում էր Երվանդը։— Բոլոր արշավախմբերն էլ այդպես, իրենց հետ վերցնում են պահածոներ, շոկոլադ և պաքսիմատ, որովհետև դրանք շատ սննդարար են և, ինչքան ուզում ես պահիր, չեն փչանա։

Ու մի օր էլ Երվանդն ընկերներին ցույց տվեց մի ցուցակ։

— Սա ի՞նչ բան է,— հարցրին ընկերները։

— Սա ցուցակն է այն բոլորի, ինչ պետք է վերցնենք մեզ հետ,— բացատրեց Երվանդն ու ընկերներին կարդաց ցուցակը։

1 հեռադիտակ,
3 դանակ,
3 կացին,
1 սղոց,
3 մուրճ,
թել ու ասեղ,
10 կիլո մեխ,
տաք շորեր,
կոշիկներ,
ճաշ եփելու երկու աման,
թեյաման,
աղ, լուցկի, օճառ, (լուցկի հարյուր տուփ),
կարդալու գրքեր,
թուղթ, մատիտներ, թանաք, եռանկյունի քանոն։

Ցուցակի ընթերցումից հետո մի որոշ ժամանակ բոլորը լուռ և մտախոհ նստեցին։ Մտածելու տեղ իսկապես որ կար։ Հե՞շտ էր այդքան բան ճարելը։

— Լավ, բա անմարդաբնակ կղզում եռանկյունի քանոնն ինչի՞ համար է,— հարցրեց Զավենը։

— Ես գրքերում կարդացել եմ, որ նրանով ինչ-որ բան են հաշվում ու չափում։

— Հա՜...— ձայնը ծոր տվեց Զավենը։

— Մեր տանը եռանկյունի քանոն կա,— ասաց Վարդանը,— որ վերցնեմ, ոչ ոք չի իմանա, ոչ որի էլ պետք չի։

Պարզվեց, որ եռանկյունի քանոն ամենքի տանն էլ կա։ Այդ մի քիչ մխիթարեց տղաներին, ապա սկսեցին քննարկել, թե ցուցակում նշված իրերից ո՞րը ունեն, ո՞րը չունեն, ո՞րը կկարողանան նշել։ Նրանք իրար սեղմված նստած էին իրենց տնակում, որտեղ հազար ու մի տեսակ երկաթեղեն էր թափթփված։

— Հեռադիտակ չունենք, դանակ...

— Ես մի հատ փոքրիկ դանակ ունեմ,— ասաց Զավենը։

Վերջիվերջո ստացվեց հետևյալ պատկերը։ Առայժմ արշավախմբի մասնակիցներն ունեին հետևյալ իրերը.

մեկ հատ դանակ,
մեկ հատ մուրճ,
մի բուռ ժանգոտ, ծուռումուռ մեխ,
որոշ քանակությամբ մատիտներ, թուղթ, գրքեր,
եռանկյունի քանոն։

— Ուրեմն իզուր ենք չարչարվել,— հուսախաբված տոնով ասաց Զավենը։— Էսքան բան զուր տեղը հավաքել-բերել ենք։

— Ինչու՞ զուր տեղը, սրանք բոլորն էլ հարկավոր են, ես գրել եմ այն բաները միայն, ինչ հարկավոր են, բայց մենք չունենք։

Այդ բացատրությունը տղաներին հանգստացրեց։

Դեպի Ազեր կղզին արշավանքը պիտի տեղի ունենար գարնանը, երբ դասերը դպրոցում վերջանային։ Զավենն ու Վարդանն իրենց ծնողներին պիտի խնդրեին՝ թույլ տալ Երվանդի հետ միասին մեկնելու Բաքվին մոտիկ այն փոքրիկ քաղաքը, ուր ապրում էր Երվանդի հորեղբայրը, և որի մոտ այդ



ամառ արդեն անց է կացրել Երվանդը։ Մինչև եկող ամառ բավականին ժամանակ կար, և տղաները մտածում էին, որ կհասցնեն, ինչպես հարկն է, նախապատրաստվել։

Այդ հույսերի ու զբաղմունքի մեջ ժամանակը ծտի նման թռչում էր։ Արդեն երեք շաբաթ էր, ինչ դպրոցում դասերը սկսվել էին։

Մեր երեք հերոսները դպրոցում էլ դասամիջոցներին միշտ միասին էին լինում, ման էին գալիս լուրջ, խորհրդավոր դեմքերով, դասընկերների հետաքրքրությունն ու նախանձը շարժելով։ Ամենքի համար էլ պարզ էր, որ նրանք ինչ-որ մի անսովոր բան գիտեն, որ ինչ-որ խորհրդավոր գործեր են անում, բայց թե ի՞նչ, ոչ ոք, իհարկե, գլուխ չէր ընկնում։

Եվ ահա մի օր Երվանդի մայրը երեքի վրա էլ բարկացավ.

— Սա ի՞նչ բան է, ձեզ տան համար այդքան քի՞չ դաս են տալիս, որ մի քանի րոպեում վերջացնում եք ու հետո խելքներդ խաղին տալիս։ Սրանից հետո, եթե տեսնեմ ինչպես հարկն է, դասերով չեք զբաղվում, ձեր էդ տնակը կքանդեմ...

Այդ սպառնալիքն ընկերներին վախեցրեց։ Մի քանի օր նրանք համարյա չհանդիպեցին միմյանց և ջանասիրաբար դասերով էին պարապում։ Այդ օրերին Երվանդը մորը խնդրեց.

— Իսկ ի՞նչ կլինի, եթե միասին հավաքվենք դասերը սովորելու։

— Ո՞վքեր, միասին։

— Դե, մենք երեքս...

Երվանդի մայրը ժպտաց.

— Ա՜խ, ձեր անբաժանելի եռյակը։ — Դե ի՞նչ կա որ, միայն թե, տեսեք, դաս պարապելու փոխարեն խաղով ու զրույցով չտարվեք։

— Չէ, մայրիկ ջան, — խոստացավ Երվանդը, — կտեսնես։

— Իսկ որտե՞ղ պիտի պարապեք։

— Մեկ մեզ մոտ, մեկ Զավենենց մոտ, մեկ Վարդանենց մոտ։

— Թույլ տալիս եմ, բայց... — մի վերջին անգամ նախազգուշացրեց Երվանդի մայրը։

Դասերը միասին սովորելու համար մեծ մասամբ հավաքվում էին Վարդանենց տանը, որովհետև այնտեղ ավելի հարմար էր։ Վարդանի հայրն ու մայրը մինչև ճաշի ժամը աշխատանքի վայրում էին լինում, իսկ քույրը դպրոց էր գնում երկրորդ հերթին։

(Շարունակելի)



Լուսիկ Լիսինյան




# ԻՄ ԴԱՍԸՆԿԵՐՈՒՀԻ ԼՈՒՍԻԿԸ

ՎԱՐԴՈՒՀԻ ՀՈՎՍԵՓՅԱՆ Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

*Սիրելի երեխանե՛ր, հիմա ես տատիկ եմ, թոռնիկ ունեմ, իսկ երբ ձեզ պես էի, սովորում էի Թիֆլիսի 1-ին գիմնազիայում: Դա ցարի ժամանակ էր: 7-րդ դասարանում էի, հիշում եմ, երբ մեր դասարանը բերին մի նորեկ աշակերտուհի: Այդ օրվանից, երեխաներ, անցել է համարյա 45 տարի: Շատ ընկերներ եմ ես ունեցել, շատերի անունները և դեմքերն եմ մոռացել, բայց նորեկ աղջկան, որի անունն էր Լուսիկ, իսկ ազգանունը՝ Լիսինյան, երբեք չեմ մոռանա և միշտ հպարտությամբ կասեմ. «Ես Լուսիկ Լիսինյանի դասընկերուհին եմ եղել»:*

*«Իսկ ո՞վ էր այդ Լուսիկ Լիսինյանը» — կհարցնեք դուք:*

*Ա՛յ, հենց դրա մասին էլ պիտի պատմեմ ձեզ:*

*Երբ ես նրան առաջին անգամ տեսա, նա 14 տարեկան մի նրբակազմ աղջիկ էր, երկար, խիտ, շագանակագույն հյուսերով, արտահայտիչ, խորունկ աչքերով, լուրջ հայացքով: Նա եկել էր մեզ մոտ մի այլ դպրոցից, որը կոչվում էր «Ուսուցչուհիների ընկերության դպրոց»: Այդ դպրոցը հիմնել էին Թիֆլիսի շատ փորձված ուսուցչուհիներ, նրանց թվում կային այնպիսիները, որոնք ռևոլյուցիոն գործունեության համար աքսորվել էին Թիֆլիս և գտնվում էին ոստիկանության հսկողության տակ: Դրանցից մեկն էր դպրոցի դիրեկտոր և միաժամանակ պատմության դասատու Ելենա Դմիտրիևնա Ստասովան:*

*Նա Ստասովան է եղել Լուսիկի ամենասիրելի ուսուցչուհին: Հետագայում Ստասովային արտաքսում են Սիբիր: Լուսիկը նրա հետ նամակագրական կապ է պահպանում: Այդ նամակներից մեկն ընկնում է ոստիկանության ձեռքը, և նա այդ օրվանից գտնվում է ոստիկանության հսկողության տակ: Ահա թե ինչ միջավայրից եկավ մեզ մոտ Լուսիկը: Ուսուցչուհիները սովորեցրել էին նրան քննադատորեն մոտենալ հարցերին, և Լուսիկը այդպես էլ անում էր: Հատկապես կրոնի դասերին, թերահավատությամբ էր վերաբերվում մեր ուսուցիչ-քահանայի բոլոր ասածներին: Լուսիկի վեճերը քահանայի հետ մեզ զվարճացնում էին, իսկ ուսուցչին՝ զայրացնում, անհանգստացնում. չէ՞ որ նրա անհնազանդությունը կարող էր վարակիչ լինել մեզ բոլորիս համար: Ընդհանրապես, երեխաներ, պիտի ասեմ, որ Լուսիկը մեր համեմատությամբ շատ ավելի ազատամիտ էր ու համարձակ, դրա համար էլ վայելում էր մեր սերն ու հիացմունքը:*

*Ես և Լուսիկը շատ շուտով մտերմացանք: Երկուս էլ ապրում էինք նույն փողոցում և միասին էինք գնում դպրոց ու վերադառնում: Շատ հետաքրքիր զրույցներ էինք ունենում մեր ճանապարհին: Հիշում եմ, Լուսիկը շատ էր գ ո ր ծ ա ծ ո ւ մ «անարդարություն» բառը: Ամեն տեղ նա տեսնում էր անարդարություն: Մեր դասարանում մի գործարանատիրոջ աղջիկ կար, անունը՝ Ռիտա: Նա դպրոց էր գալիս սեփական շքեղ կառքով: Երբեմն Ռիտան նկատելով ինձ, կառքը կանգնեցնում էր ու ինձ հրավիրում նստել: Մի օր էլ, Լուսիկի հետ դպրոց գնա-*

լիս, Ռիտան կանգնեցրեց կառքը և երկուսիս էլ հրավիրեց նստել։ Լուսիկը թեիցս քաշեց.

— Ո՛չ,— ասաց,— ավելի հաճելի է ոտքով գնալ։

— Լուսիկ, անհարմար չէ՞ր,— հարցրեցի ես, երբ կառքն հեռացել էր,— ինչո՞ւ մերժեցիր։ Ինչո՞ւ դու չես սիրում Ռիտային։ Նա շատ լավ աղջիկ է։ Իսկի էլ հպարտ չի։

— Իսկ ի՞նչ ունի հպարտանալու,— պատասխանեց Լուսիկը,— որ հարո՞ւստ են, հա՞, բայց դու գիտե՞ս, թե ինչպես է ձեռք բերված այդ հարստությունը։ Դու գործարանում չես եղել, չգիտես, թե ինչ ծանր պայմաններում են աշխատում բանվորները։ 10—12 ժամ քրտինք են թափում. եթե օրական 10 ռուբլու արտադրանք են տալիս, իրենց 10 կոպեկ էլ բաժին չի ընկնում։ Ահա նա, գործարանատիրոջ աղջիկը, կառքով է համեցեք անում գիմնազիա, իսկ նրա հոր բանվորների երեխաները դպրոցի ճամփան էլ չգիտեն, նրանք կոշիկ էլ չունեն ոտքերին, ձմեռ-ամառ բոբիկ են ման գալիս։ Իսկ դու ասում ես «հպարտ չի»։ Նա որ հասկանա, ոչ թե պիտի հպարտանա, այլ պիտի ամաչի, կարմրի, որ ինքը կապիտալիստի աղջիկ է։ Ես նրանց կառքը երբեք չեմ նստի ու դու էլ չպիտի նստես,— ավելացրեց նա։

Զարմացած լսում եմ նրան. դեռ ոչ որ ինձ հետ այդպես չէր խոսել։

— Բայց, Լուսիկ ջան, ասա խնդրեմ, դու որտեղի՞ց գիտես այդքան բան։

— Ես շատ բան գիտեմ, քեզ պես միամիտ չեմ. Ինձ հետ Ելենա Դմիտրիևնան շատ է խոսել այդ անարդարությունների մասին. որ մեծանամ, ես էլ պիտի ռևոլյուցիոներ դառնամ։ Միայն դրա համար հարկավոր է շա՜տ, շատ սովորել, կարդալ, ուսումնասիրել։ Նա ինձ գրքեր է տվել, որ դու էլ կարդաս, դու էլ շատ բան կհասկանաս։

Եվ ես սկսեցի հաճախել Լուսիկի մոտ ու օգտվել





նրա գրադարանից։ Գերցեն, Բելինսկի, Չերնիշևսկի, Շիլլեր, Շեքսպիր էր տալիս Լուսիկն ինձ կարդալու։ Շատ անգամ էլ վիճում էինք սիրած հերոսի մասին, մեր հավանած տեղերը բարձրաձայն կարդում էինք իրար։

Լուսիկը շատ ջերմ ընտանեկան մթնոլորտում էր ապրում. համակրելի ծնողներ ուներ և երեք քույրեր։ Լուսիկի հայրը ռևոլյուցիոն անցյալ ուներ. Լուսիկը պատմում էր, որ իր հայրը 1905 թվականին մասնակցել է ռուսական առաջին ռևոլյուցիային։

— Երբեմն էլ գաղտնի հավաքի գնալիս,— պատմում էր Լուսիկը հոր մասին,— հայրս ինձ էլ էր տանում իր հետ, իբր թե հայրը, պարզապես, զբոսնում է երեխայի հետ։ Ձեռքիս բռնում էի նախաճաշիկի զամբյուղը, բայց մեջը նախաճաշ չէր լինում, ես այդ լավ եմ հիշում։ Մի անգամ էլ, երբ հորս հետ բարձրանում էինք Բեթխեհեմ սարը, դարձյալ նախաճաշի զամբյուղը ձեռքիս, հանկարծ մեր մոտով սուլեց մի գնդակ, հետո մյուսը. կրակում էին մեզ վրա։

— Հայրիկ,— հարցնում եմ,— ինչո՞ւ են կրակում։

— Որովհետև մենք հայ ենք։

— Իսկ հայ լինելը վա՞տ բան է։

— Աղջիկս, դու հիմա փոքր ես, չես հասկանա։ Ա՛յ, երբ մեծանաս ու հիշես այս օրը, ես քեզ կբացատրեմ։

— Իսկ հիմա ես գիտեմ, թե դրանք ինչ կրակոցներ էին. ինձ դա բացատրեց Ելենա Դմիտրիևնան, ցարի սուր քաղաքականությունն էր դա։ Ասում են «Բաժանիր, որ տիրես», այսինքն, վախենալով ռևոլյուցիայից նրանք լարում էին Կովկասի եղբայրական ժողովուրդներին իրար դեմ ու դրանով թուլացնում ռևոլյուցիայի ուժը։ Ահա այդ քաղաքականության շնորհիվ էր, որ հայերը և թուրքերը կոտորում էին իրար։

Լուսիկն այդ ժամանակ մի գաղտնիք ուներ, որ ինձ չէր ասում։ Նա ինձ դեռ լրիվ չէր վստահում։ Այդ ժամանակ Լուսիկը և իր փոքր քույրը՝ Անիկը, իրենց տանը գաղտնի թերթիկներ, կոչեր էին տպագրում և փակցնում քաղաքի պատերին։ Այդ կոչերը ուղղված էին ցարի դեմ։ Չէր ասում ինձ Լուսիկը նաև այն մասին, որ նա արդեն մարքսիստական ընդհատակյա մի խմբակի անդամ էր, որտեղ բացի իրենից կային նաև 9 տղաներ՝ Ներսիսյան դպրոցի սաներից, իսկ նրանց ղեկավարն էր ընկ. Միկոյանը։ Այդ ժամանակ Լուսիկն արդեն կարդում էր Մարքսի «Կապիտալը», կոնսպեկտներ էր կազմում։ Որտեղի՞ց իմանայի ես այդ բոլորը, երբ գաղտնապահ աղջիկը թաքցնում էր ինձանից՝ իր մոտ ընկերուհուց։

Գիմնազիան ավարտեցինք շատ հաջող։ Լավ էինք սովորում, անտեղի ժամանակ չէինք կորցնում, ուզում էինք շատ բան իմանալ։ Հավատացեք, երեխաներ, բացի դասերից ու գրքերից, ուրիշ ոչ մի բանի համար ժամանակ չունեինք։ Մեր առաջ դրված էր շատ լուրջ խնդիր։ Պատրաստվում էինք գնալ Մոսկվա՝ շարունակելու մեր կրթությունը, իսկ դրա համար հարկավոր էր հասունության վկայական, որը աղջիկների գիմնազիան չէր տալիս, դրա համար էլ դասերին զուգընթաց պարապում էինք ինքնազարգացմամբ։

Եկավ 1914 թ. օգոստոսը. սկսվեց 1-ին համաշխարհային պատերազմը։ Մեր հույսերը խորտակվեցին։ Ես մնացի գյուղ՝ ուսուցչուհու պաշտոնով, իսկ Լուսիկը մտավ գթության քույրերի դասընթացը և ավարտելով այն, դարձավ զինվորական հիվանդանոցի հիվանդապահ։ Արձակուրդներին Թիֆլիսում հանդիպեցի Լուսիկին, հարցնում եմ.

— Ինչպե՞ս ես, Լուսիկ, գո՞հ ես աշխատանքից։

Առաջին խոսքը, որ արտասանեց նա, դարձյալ «անարդարությունն» էր.

— Ախր, ինքդ դատիր, ահա պատերազմ է, իսկ ո՞ւմն է պետք—կապիտալիստներին. ո՞վ է կոտորվում—խաղաղ ժողովուրդը, բանվորը, գյուղացին։ Հապա ո՞ւր է արդարությունը, երանի քեզ, որ չես տեսնում նրանց տանջանքները. չես լսում նրանց հառաչանքները։ Ինչքա՜ն մայրեր են արտասվում, ինչքա՜ն երեխաներ որբանում, ինչ որ ձեռքիցս գալիս է, անում եմ. խնամում եմ հիվանդներին, նամակներ եմ գրում ընտանիքներին, գրքեր եմ կարդում նրանց համար։ Բայց մի՞թե այդ է հարկավոր նրանց... Ինձ մի վիրավոր՝ Պիտերի բանվորներից, ասաց.

«Քույր, տեսնում եմ, շատ բարի աղջիկ ես, խելոք, զարգացած։ Հասկացիր, եթե ուզում ես մեզ օգնել, գնա, պայքարիր ցարի դեմ, պատերազմի դեմ, այս կարգերի դեմ»։

— Այո, նա ճիշտ է ասում. վիրավորին խնամելը քիչ է, պետք է պայքարել նրա համար, որ պատերազմ չլինի, վիրավորներ չլինեն, խաղաղություն է պետք աշխատավոր մարդկանց։ Ես որոշել եմ թողնել հիվանդանոցը, գնալ Մոսկվա. այնտեղ ես կգտնեմ ինձ նման մտածողներին, ես նրանց գիտեմ, ինձ Ելենա Դմիտրիևնան նույն խորհուրդն է տվել։ Ես պիտի շարունակեմ նրա գործը։



Տեսնում եմ, որ արդեն Լուսիկը շատ է փոխվել։ Ավելի լուրջ ու մտազբաղ է։ Նրա մեջ արդեն խոսում է ապագա ռևոլյուցիոները. նա կանգնած է մի ճանապարհի վրա, որ տանում է նրան դեպի բոլշևիկյան ընդհատակ։

Մի տարի անց Լուսիկն արդեն Մոսկվայի ինստիտուտի ուսանողուհի էր, բոլշևիկյան գաղտնի կազմակերպության անդամ։ Թռուցիկներ էր տարածում, պարապում էր մարքսիստական խմբակում։

1916 թվականին 19-ամյա Լուսիկին առաջարկեցին Միխելսոնի գործարանում աշխատել որպես պրոպագանդիստ։ Դա շրջանի ամենամեծ, ռազմական մեծ նշանակություն ունեցող գործարանն էր։ Այնտեղ բանվորները զենք էին արտադրում։

Լուսիկը մտածում է. «Կարո՞ղ եմ արդյոք, բայց անհրաժեշտ է, որ կարողանամ, ուրեմն պիտի կարողանամ»։

Եվ Լուսիկը գնում է առաջին պարապմունքին, որ կայանալու էր Ուվարիչի տանը։

— Դուսյա,— ասում է փականագործ Ուվարիչը կնոջը,— այսօր դու նորից քո ծննդյան տոնը պիտի կատարես։

— Կատա՞կ ես անում, մի ամիս չկա, ինչ կատարեցինք, հարևանները ի՞նչ կասեն։

— Դե լավ, հարևաններին ասա, որ այսօր էլ իմ տոնն է։

Ուվարիչի փոքրիկ բնակարանում հավաքվել են 9 բանվոր։ Դե, ինչպե՞ս չշփոթվեր Լուսիկը, երբ նրանցից յուրաքանչյուրն իր հոր տեղն էր։ Բանվորները ուշադրությամբ նայում են այդ նրբակազմ, շփոթված աղջկան, որ եկել է նրանց սովորեցնելու և իր հետ բերել է Լենինի կենդանի խոսքը։

Լուսիկը մեղմ ժպտում է ու ասում.

— Եկեք ծանոթանանք։

— Ընկեր Լուսիկ,— հարց է տալիս բանվորներից մեկը,— ե՞րբ կսկսենք ապստամբության պատրաստությունը։

— Հենց այսօրվանից,— պատասխանում է Լուսիկը,— ընկերներ, ես բերել եմ ձեզ ընկեր Լենինի

հողված։ Այստեղ խոսվում է պրոլետարիատի զինվելու անհրաժեշտության մասին. պետք զինվենք, որ հաղթենք, սեփականազրկենք և զինաթափենք բուրժուազիային։

Բանվորները սիրեցին Լուսիկին։ Նրա Հասարակ, պարզ խոսքը հասնում էր ունկնդիրներին։ Հետագայում խմբակը աճեց, մեծացավ, Լուսիկը դարձավ շատ լավ ագիտատոր և կազմակերպիչ։

Պարտիայի հանձնարարությամբ Լուսիկը գործարանում երիտասարդ առաջավոր բանվորներից կազմակերպում է երիտասարդական բջիջ։ Դա, երեխաներ, առաջին կոմերիտական բջիջն էր, իսկ ինքը՝ Լուսիկը, առաջին կոմերիտուհին էր և բջջի ղեկավարը։

Այդ ժամանակվանից Լուսիկն իր կյանքն ամբողջովին նվիրեց ռևոլյուցիային, դարձավ բոլշևիկյան պարտիայի մարտիկ։ 1917 թիվն էր։ Նա այժմ կապված էր երեք մեծ գործարանների հետ։ Ինքը՝ Լուսիկն էլ, շատ էր փոխվել։ Այդ ժամանակ նրան «Ծիպոլնիկ» մականունն էին տվել, իր ուժեղ բնավորության և ռևոլյուցիայի թշնամիների դեմ անհաշտ պայքարի համար։ Նա գիշեր-ցերեկ աշխատում էր. պարապում խմբակներում, միտինգներ էր կազմակերպում գործարաններում, ամեն տեղ տարածում էր Լենինի գաղափարները, զինված ապստամբության կոչ էր անում բանվորներին, կազմակերպում էր սանիտարական դրուժինաներ։ Բանվորները հավատում ու սիրում էին իրենց ագիտատորին և գնում էին նրա ետևից։ Միխելսոնի (այժմ Իլյիչի անվան) գործարանում հազարավոր բանվորներ գործադուլ են անում։ Նրանք զինվում են, պատրաստվում են մասնակցելու ռևոլյուցիայի մարտերին։ Գործարկոմ Կոզլովի կողքին կանգնած է մի տղա, արցունքներն աչքերին հրացան է խնդրում.

— Հետո՛ ինչ, որ փոքր եմ,— ասում է,— հրացան կրակել գիտեմ, տեսեք ի՞նչ մկաններ ունեմ։

— Ախր, քեզ կսպանեն, հետո ի՞նչ պատասխան տամ հորդ։

— Իսկ մեծերին չե՞ն սպանի։

— Լա՛վ, Ուվարիչ, այս Զմերուկին մի հրացան տուր։

Եվ այսպես, կարմիր գվարդիական ջոկատի ամենաերիտասարդ մարտիկի մականունը մնաց «Զմերուկ»։

Սկսվեցին Հոկտեմբերյան մարտերը։ Հեռախոսները չէին գործում։ Լուսիկը կապավոր էր. հրամաններ էր հասցնում շտաբից բարիկադներ, բարիկադներից՝ զեկույցներ տանում շտաբ։ Ահա նա մեքենայով վիրավորներ է փոխադրում, վերքեր է կապում։ Գնում է տեքստիլագործարան, բամբակի



հակեր բերում՝ բարիկադներն ամրացնելու համար։ Ահա նա, շքեղ վերարկուն հագած, նորաձև գլխարկով, քողը երեսին, անճանաչելի դարձած, անցնում է յունկերների, ժամապահների մոտով դեպի ռևոլյուցիայի կենտրոն՝ Մոսսովետ։

Բայց որտեղ էլ որ լինի Լուսիկը, նա չի մոռանում, որ այնտեղ՝ Օստոժենկայում, խրամատներում, որտեղ գտնվում են Միխելսոնի գործարանի բանվորները և նրանց հետ էլ «Զմերուկը», դրությունը շատ լուրջ է. այնտեղ յունկերները կառուցել են շատ լավ ամրացված բարիկադներ, բազմաթիվ թնդանոթներ են դրել։ Կրակում են շենքերի տանիքներից, պատուհաններից։

Նոյեմբերի 1-ի առավոտյան Լուսիկը գալիս է Կարմիր գվարդիայի շտաբը, դիմում պետին.

— Օստոժենկայում դրությունը շատ լուրջ է, շտապ հարկավոր են փամփուշտներ։

— Լա՛վ, Լուսիկ, ես կուղարկեմ։

— Թույլ տվեք ես ինքս տանեմ։ Այնտեղ խրամատում մի տղա կա՝ «Զմերուկը». ես նրան խոստացա վերադառնալ փամփուշտներով։

— Բայց, Լուսիկ, դա շատ վտանգավոր է. սպի-

տակ գվարդիականները զազազած են. դուք հաճախ եք գնում այնտեղ, նրանք ձեզ նկատել են, կալանեն։

— Մեռնել ռևոլյուցիայի համար, դա իմ իրավունքն է։

Առավոտանից «Ձմերուկը» պառկած է խրամատում, հրացանի կոթը իրար սեղմած կրծքին. փամփուշտ չկա։ Հանկարծ նա նկատեց, որ փողոցով, տան պատերին սեղմվելով գալիս է Լուսիկը, իսկ նրա ետևից՝ կարմիր գվարդիականների շղթան։ Նրանք արկղներ են բերում։

— Փամփուշտնե՞ր,— գոչում է «Ձմերուկը»,— վեր է թռչում ու հրացանը նետում հողաթմբից այն կողմ։

— Չհամարձակվե՛ս վերև բարձրանալ, կալանեն,— լսվում է ամեն կողմից։

Բայց «Ձմերուկն» արդեն հողաթումբն անցել է և ձեռքը մեկնում է դեպի հրացանը։ Որոտում է համազարկը. փամփուշտները խրվում են տղայի լղարիկ կուրծքը։

— Որդյա՛կս,— գոչում է Լուսիկը, փողոցի միջով վազելով դեպի տղան և ընկնում նրա կողքին։

Սպիտակ գվարդիականի գնդակը դիպել էր սրտին ու կտրել նրա երիտասարդ կյանքի թելը։

Այսպես վերջացավ Լուսիկի կարճատև, բայց գեղեցիկ կյանքը։ Նա իրականացրեց իր իրավունքը. մեռավ ռևոլյուցիայի հաղթանակի համար։

Մարտական ընկերները Լուսիկին ծածկեցին զինվորական շինելով, դրին պատգարակի վրա և տարան տուն։

Երբ բաց արին սենյակի դուռը, առաջինը, որ տեսան, դա Լենինի նկարն էր, դրված սեղանին։ «Լենինի խոսքերը շուրթերին, նրա կերպարը սրտում, գնաց մեր սիրելի ընկեր Լուսիկը»— տխուր ձայնով ասաց բանվորներից մեկը։

Լուսիկին թաղեցին մեծ պատվով, Կարմիր Հրապարակում, հինավուրց Կրեմլի պատերի տակ, եղբայրական գերեզմանում։

Հերոս աղջկա անունը հավերժացնելու համար, Մոսկվա քաղաքի Մալայա Սերպուխովկա փողոցը կոչվեց Լուսիկ Լիսինյանի անվան-Լյուսինովսկայա։

* * *

1952 թիվն է. Մոսկվայումն եմ. մի գեղեցիկ պայծառ օր որոշեցի նվիրել Լուսիկի հիշատակին, այցելել նրա գերեզմանին, տեսնել փողոցը։

Գնում եմ Կարմիր Հրապարակ։ Այցելում եմ Լենինի դամբարանը։ Ինչպես միշտ, այս անգամ էլ հուզված դուրս եմ գալիս դամբարանից մի ճանապարհով, որ տանում է դեպի Կրեմլի պատը։ Ահա այստեղ, կանաչների մեջ փռված է եղբայրական մեծ գերեզմանը։ Կարդում եմ գրված հերոսների անունները, գտնում եմ Լուսիկի անունը, կանգնում եմ ու երկար մտածում։ Հիշում եմ մեր ընկերությունը, պատանեկությունը. մի տեսակ զգացում է պատում ինձ. դա և՛ տխրություն է,



և՛ հպարտություն։ Մտածում եմ։ Ահա, Լուսիկ, ի՞նչ փառքի արժանացար։ Զոհվեցիր սիրածդ գաղափարի համար, թաղվեցիր Կարմիր հրապարակում։

* * *

Մետրոյով գնում եմ մինչև Սերպուխովկա կայանը։ Դուրս եմ գալիս Դոբրինինի հրապարակը, իսկ այստեղից սկսվում է Լուսիկի փողոցը։ Մոտենում եմ անկյունի շենքին, կարդում եմ «Լյուսինովսկայա»։ Գտնում եմ № 28 տունը։ Ահա այս շենքում՝ ներքևի հարկում ուսանողական ճաշարան է եղել, իսկ վերնահարկում՝ գաղտնի հավաքներ, բուռն վեճեր ու խորհրդակցություններ։ Այստեղ է անցկացրել Լուսիկն իր խմբակների պարապմունքները։ Շենքի պատին փակցված մարմարյա տախտակի վրա ոսկե տառերով գրված է. «Այստեղ մինչև ռևոլյուցիան գտնվում էր բոլշևիկ սոցիալ-դեմոկրատների ընդհատակյա կենտրոնը։ Իսկ 1917 թ. Փետրվարյան և Հոկտեմբերյան ռևոլյուցիայի օրերին՝ ՌՍԴԲԿ Զամոսկվորեչիայի շրջանային կոմիտեն»։

Իմ ուշադրությունը գրավում է մի մեծ շենք մյուս մայթի վրա. մոտենում եմ, № 29 շենքն է։ «Մոսկվայի № 553 դպրոց», կարդում եմ ցուցատախտակը։ Աստիճաններով իջնում է կապուտաչյա մի փոքրիկ աղջիկ, կարմիր վզկապը կրծքին։ Մոտենում եմ, ուզում եմ իմանալ, գիտե՞ արդյոք այս փոքրիկը, թե ով է Լուսիկը։

— Բալիկս, ի՞նչ փողոց է սա։

— Լյուսինովսկայա։

— Իսկ ինչո՞ւ է այդպես կոչվում։

Փոքրիկը զարմացած նայում է ինձ։

— Դուք, տատիկ,—ասում է,—երևի եկվոր եք, որ չգիտեք, թե ով է Լյուսյան։ Նա առաջին կոմերիտուհին է, որ 20 տարեկան հասակում զոհվեց բարիկադներում, 1917 թվին։ Ա՛յ, եկեք մեր պիոներական սենյակը, ցույց կտամ նրա նկարը. մեր դրուժինան էլ կոչվում է նրա անունով։

Ես հետևում եմ փոքրիկ աղջկան։

Գեղեցիկ, լուսավոր սենյակ, սեղանին ծաղկեփնջեր, պատուհաններին ծաղկամաններ։ Պատին կախված է մեծադիր նկար։ Դա իմ Լուսիկն է, աշակերտական համազգեստով, ճիշտ այնպես, ինչպես հիշում եմ նրան աշակերտական նստարանից։ Նկարի տակ կարդում եմ. «Լուսիկ Լիսինյան, առաջին կոմերիտուհին»։ Ահա և «Մոսկվայի № 553 դպրոցի Լուսիկ Լիսինյանի անվան պիոներական դրուժինայի» պատի թերթը։ Ճակատին խոշոր տառերով. «Լինել Լուսիկ Լիսինյանի նման»։

Իսկ աղջիկը շարունակում է.

— Մենք՝ Լուսիկ Լիսինյանի դրուժինայի պիոներներս, աշխատում ենք ամեն բանով նմանվել Լուսիկին։ Լավ ենք սովորում։ կարգապահ ենք, շատ գրքեր ենք կարդում։ Հավաքույթների ժամանակ ուսումնասիրում ենք Լուսիկի կյանքը։ Մենք հանդիպում ենք ունեցել Լուսիկի քույրերի հետ։

Չեմ համբերում, գրկում եմ փոքրիկին, համբուրում և հուզմունքից դողացող ձայնով ասում.

— Բալիկս, ինչքա՜ն ուրախ եմ, որ դուք սիրում եք Լուսիկին։ Չէ՞ որ ես Լուսիկի դասընկերուհին եմ։

Այս անգամ փոքրիկն է գրկում ու համբուրում ինձ։

— Ա՜խ, տատիկ, ինչքա՜ն երջանիկ եմ ես, որ ծանոթացա Լուսիկի ընկերուհու հետ։ Ես կպատմեմ մերոնց, ա՛յ թե կնախանձեն ինձ։

Հրաժեշտ եմ տալիս փոքրիկ Տանյային և շարունակում ճանապարհս, դեպի Լիսինյանների՝ իմ լավ բարեկամների տունը։

Ընդհանուր միջանցքի դուռը բաց է անում մի անծանոթ, երիտասարդ կին, իմանալով, որ Հայաստանից եմ եկել ու Լիսինյաններին եմ ուզում, մտերմաբար հարցնում է.

— Բարեկա՞մ եք։

— Ոչ,— ասում եմ,— Լուսիկի դասընկերուհին եմ։

Դեռ խոսքս չվերջացած, անծանոթ կինը գրկում է ինձ.

— Մի՛ զարմանաք, և ներեցեք, խնդրում եմ։ Ախր ես Իլյիչի գործարանի բանվորուհիներից եմ։ Եթե դուք գաք մեր գործարանի կարմիր անկյունը՝ կտեսնեք Լուսիկի նկարները և նրա կյանքին վե-



բարևրող շատ նյութեր։ Գիտե՞ք, կոմերիտմիության 30-ամյակին մենք հանդիսավորությամբ մեծարեցինք մեր Լուսիկին՝ գործարանի առաջին կոմերիտուհուն։ Այն ժամանակ որոշեցինք գործարանի ամենաառաջավոր բրիգադային շնորհել Լուսիկ Լիսինյանի անունը։ Հիմա այդ պատվին արժանացել է մեր բրիգադան։ Ինչքա՞ն ուրախ եմ ձեզ հետ ծանոթանալու համար։

Չնայած ես այդպես էլ գիտեի, երեխաներ, որ գործարանը չի մոռանա իր առաջին կոմերիտուհուն, բայց և այնպես բանվորուհու պատմածը հուզեց ինձ։ Լուսիկի քույրերը՝ Անահիտը, Գոհարը և Անիկը, ընդունում են ինձ գրկաբաց։

Մեծ քույրը՝ Անահիտ Արտեմովնան, ասում է. «Եթե հիմա Լուսիկը կենդանի լիներ, ձեզ նման սպիտակ մազերով տարեց մի կին կլիներ։ Գուցե և թոռներ ունենար ու ինչքա՞ն պիտի ուրախանար, ձեզ հետ, իր մտերիմ ընկերուհու հետ հանդիպելու համար։

Խոսում ենք անցյալից, Լուսիկի կյանքից, գործից, մահից, խոսում ենք մեր ներկա կյանքից։

Երեկո է, շոգ է, բացում ենք պատուհանը ու դուրս նայում։ Մեր առաջ փռվել է անծայրածիր Մոսկվան, իսկ դիմացը կանգնած է շքեղ հրավառված մի հսկա գեղեցկուհի։ Դա նորակառույց համալսարանի շենքն է, որ մթության մեջ փայլում է իր հեքիաթային տեսքով։ Երկար դիտում ենք շլացուցիչ այդ տեսարանը ու նորից անդրադառնում Լուսիկին։ Ահա թե ինչի համար էր պայքարում Լուսիկը։ Նա երազում էր սոցիալիզմի մասին։ Ճիշտ է, նա չտեսավ, բայց նա գիտեր, թե ինչի համար էր զոհում իր կյանքը։ Այո, նրա մահը իմաստալից մահ էր։

* * *

Երեխաներ, ես կատարեցի իմ խոստումը, պատմեցի ձեզ Լուսիկի մասին։ Հիմա դուք գիտեք՝ ով է նա, և ինչու են հպարտանում նրանով, թե՛ նրա ընկերները, թե՛ կոմերիտականները և թե՛ փոքրիկ պիոներները։

Երեխաներ, ես կուզենայի, որ դուք էլ Մոսկվայի № 553 դպրոցի պիոներների նման կարդաք Լուսիկի մասին, աշխատեք նմանվել նրան։

Ձեր տատիկ՝ ՎԱՐԴՈՒՇ ՀՈՎՍԵՓՅԱՆ



Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ



## ԱՐԵՎԱԾԱՂԻԿ

Հ. ԱՐԹԵՆՅԱՆ

Պապիկիս տան մոտ,
Տեսնո՞ւմ ես ահա,
Կանգնել է ծանոթ
Սիրուն մի պահակ։

Կանգնել է անշարժ
Ու առանց խոսքի.
Իրանը կանաչ,
Գլուխը ոսկի։

Գիշեր ու ցերեկ
Մնում է արթուն,
Չի հոգնում երբեք,
Չի մտնում նա տուն։

Կարծես թե հսկա
Երիցուկ լինի,
Թերթերը սակայն
Արևի գույնի։

Գլուխն է դեղին
Թեքում աննշմար,
Անցնող արևին
Նայում անդադար։

# Մեր Սոխակը

Լ. ԲԱՌՆԱԿՅԱՆ

Նկ. Բ. ՔՈԼՈՋՅԱՆԻ

Անցել են տարիներ, բայց ես չեմ մոռանում մեր հին բակն ու իմ խաղընկերներին։ Չեմ մոռանում նաև իմ ընկերներից մեկին, որի մասին ուզում եմ պատմել...

Ձմեռնամուտ էր. մեր բակում նոր տնվոր ավելացավ։ Մենք իրար խառնվեցինք, օգնեցինք նորեկ հարևանին, որ իրերն արագ ներս կրի։ Ամեն անգամ որևէ կապոց ներս տանելուց հետո, մենք ուշադրությամբ նայում էինք նոր հարևանի տղային. նա մեզ հասակակից էր, բայց ինչո՞ւ էր այդպես հանգիստ ու անվրդով կանգնել, ինչո՞ւ չէր մասնակցում ընդհանուր գործին... Նա գեր էր, բայց շատ գունատ։ «Երևի հիվանդ է»— որոշեցինք մենք ու շարունակեցինք մեր գործը։

Տանտերը միջահասակ, ալեխառն մազերով, կատակասեր մարդ էր, իսկ տանտիրուհուն երեսն առաջին օրը չտեսանք. նա եկավ հաջորդ օրը, երբ տանն ամեն ինչ արդեն կարգի էր բերված։

Նոր հարևանի տղան մեր հարցերին՝ թե ի՞նչ է անունը, կամ ո՞ր դասարանում է սովորում, չպատասխանեց։ «Երևի ամաչում է», դրա պատճառն էլ գտանք ու հեռացանք, բայց նրանից մենք շատ հեռանալ չէինք կարող, խաղում էինք հենց նրանց պատուհանների տակ և, այդ օրը մեր խոսակցության առարկան միայն նոր հարևանն էր։

— Քեռի,— բաց պատուհանից տանտիրոջը նկատելով ասացի ես,— ինչո՞ւ ձեր տղան էլ չի գալիս խաղալու...

Նա լայն ժպտաց ու, չգիտեմ ինչու, շատ ցածր ձայնով, կարծես վախենալով ասաց՝ կգա...

Բայց այնպես էլ նա չեկավ, և երկու օր մենք նրան չտեսանք։

Երրորդ օրը մեր նորեկ հարևանի տղան հայտնվեց մեր դասարանում։ Այդտեղ էլ մենք լսեցինք նրա անունը՝ Սոխակ...

Տղաներից մի քանիսն սկսեցին ծիծաղել՝ Սոխա՞կ, թե Միխակ...

Սոխա՛կ, Սոխա՛կ, շուտով կդայլայլի...

Ես սկսեցի պաշտպանել նրան։ Սոխակը նստեց վերջին շարքի նստարանին և այնպես էլ չդայլայլեց։ Ամբողջ օրը ոչ մեկի հետ ոչ մի բառ չփոխանակեց։

Դասերից հետո մենք միասին տուն գնացինք։ Ես իմացա, որ նա եկել էր հեռու քաղաքից, իմացա նաև, որ նա քույր ու եղբայր չունի։

Եկավ առաջին ձյունը ու մեզ նոր ուրախություն բերեց։ Մենք այլևս տանը նստել չէինք կարողանում. սովորում էինք դասերս ու խաղում էինք, խաղում... Իսկ Սոխակը տանից դուրս չէր գալիս։

Երբեմն ես տեսնում էի, որ նա նստում էր իրենց պատուհանի գոգին ու դեմքն ապակիներին քսելով դուրս էր նայում...

Ես նրան հարցնում էի.

— Սոխակ, ինչո՞ւ չես գալիս խաղալու...

— Մայրիկս թույլ չի տալիս,— տխուր պատասխանում էր նա։

Եվ այդպես, Սոխակը չէր խաղում մեզ հետ, ես նրան հանդիպում էի միայն դպրոցում։ Սոխակը բոլոր դասամիջոցներին զբաղված էր ուտելով։ Մեր թվաբանության ուսուցիչը, որը շատ կատակասեր մարդ էր, երբեմն վերցնում էր նրա պայուսակն ու շուռ տալիս. ինչե՜ր ասես՝ չէին թափվում...

տանձ, խնձոր, չիր, փշատ, խմորեղենի կտորներ, ապա վերջում՝ մի երկու գիրք, յուղոտված ու կեղտոտ տետրեր և առանց ծայրի մի կիսատ գրիչ։

Սոխակը աչքերը չորս արած՝ նայում էր, իսկ մենք ծիծաղից թուլացած ընկնում էինք նստարանի վրա։

Մենք հինգերորդ դասարանից փոխադրվեցինք վեցերորդ դասարան, Սոխակը մնաց նույն դասարանում։ Բայց նա չտխրեց։ Ամառը բակում հիանալի ճամբար ստեղծեցինք։ Մեր ջոկատավարն աշխատում էր գործարանում, մի օր նա բակային ճամբար գալով հայտարարեց.

—Երեխանե՛ր, մեր գործարանից մի խումբ բանվորների երեք օրով շեֆ գյուղ ենք տանելու՝ բերքահավաքին օգնելու համար, ես ուզում եմ ձեզ էլ տանել, համաձա՞յն եք։

—Այո՛, իհարկե՛,—ուրախացած բացականչեցինք մենք ու շրջապատեցինք նրան։

Այդտեղ էր և Սոխակը։ Նա կանգնել էր հեռու ու խեղճ-խեղճ մեզ էր նայում։ Ընկեր Կամսարը ձեռքով իր մոտ կանչեց Սոխակին ու դառնալով մեզ, շշնջաց.

—Նա դարձյա՞լ չի մասնակցում ձեր աշխատանքներին։

Մենք գլուխներս բացասաբար շարժեցինք։ Սոխակը մոտեցավ։

—Եթե ուզում ես, դու էլ եկ մեզ հետ։

Սոխակը անիմաստ հայացքով շարունակում էր նայել մի կետի։ Ավագ ջոկատավարը կրկնեց հարցը։ Նա շարժեց ուսերը։ Մի քանիսը փռթկացին։

—Տանենք ի՞նչ անենք է՛, Սոխակն ալարում է քիթը սրբել,—ասաց Արմենը։

Սոխակը վիզը թեքեց ու աչքի տակով նայեց Արմենին. այդ պահին այնպես տխուր էր, այնպես խեղճ, թվում էր, թե ուզում է լաց լինել, բայց ամաչում էր երկար հասակից։

—Տղաներ, եկեք համոզենք, նրան էլ տանենք,—հետաքրքիր կլինի,—առաջարկեց Գուրգենն ու սկսեց փսփսալ տղաների ականջին։

Մյուս օրը վաղ առավոտյան հավաքվեցինք գործարանի բակը։ Եկել էր նաև մեր Սոխակը։ Նրան նկատելով, Արմենը ձեռքով բռնեց բերանը, իսկ մյուսները չթարցնելով իրենց ծիծաղը, բարձրաձայն քրքջալով մոտեցան։

—Սոխակ, մայրդ թույլ տվե՞ց...—հարցրեց Գուրգենը։

—Այո, ասել եմ էքսկուրսիա պիտի գնանք...

Մերոնք շրջապատեցին Սոխակին ու սկսեցին հարցուփորձ անել, թե մայրն ի՞նչ է դրել նրա ձեռքի մեծ ճամպրուկի մեջ։ Շուտով երևաց ավտոմեքենան. մենք տեղավորվեցինք մեքենայի թափքի մեջ, և մեքենան շարժվեց։ Մի փոքր անց դուրս էինք եկել քաղաքից։ Մեքենան սլանում էր լայնարձակ դաշտերի միջով ձգվող խճուղով։ Ճանապարհն անցնում էր ձորերի ու սարերի փեշերով, և ամեն րոպե մեր աչքի առաջ բացվում էին նորանոր ու հետաքրքիր տեսարաններ։ Հիանալով բնության գեղեցկություններով, մենք չիմացանք, թե ինչպես անցավ երկու ժամը, և գյուղ հասանք։

Շոգ էր, բայց ձորաբերանից թափվող ջրվեժի ձայնը, կարծես զովացնում էր օդը։ Գյուղամիջով



հոսող առվակի ափին արածում ու լողանում էին սպիտակ բադեր ու սագեր։ Գյուղի հարավային մասում փռված էր կոլտնտեսության կալը, ուր սարերի նման բարձրացել էին ցորենի շեղջերն ու հարդի հսկայական դեզերը։ Մեր մեքենան կանգ առավ իսկույն, դեպի մեզ վազեցին կոլտնտեսականներից մի քանիսը.

—Բարի գալո՛ւստ,— ընկեր Կամսարի ձեռքը սեղմելով, ասաց արևահառ դեմքով մի երիտասարդ,— մենք ձեզ արդեն սպասում էինք, բայց... —խոսքը կիսատ թողնելով ձեռքով ցույց տվեց մեզ...

—Այո, բացի բանվորներից, ես բերել եմ նաև իմ պիոներներին,— գլխով ցույց տվեց մեզ Կամսարը։

—Դա արդեն հիանալի է, բանվորները կլինեն կալում, կաշխատեն կոմբայնի հետ, իսկ պիոներները պետք է սարը բարձրանան։

Քիչ հետո մենք ընկեր Կամսարի և բրիգադիր Արտաշի հետ ոտքով ճանապարհ ընկանք դեպի մոտակա սարալանջը։

—Սրանք խոպան հողեր էին, այս տարի առաջին բերքն ենք հավաքել, հիանալի կարմրահատ ցորեն ստացանք,— պատմում էր բրիգադիրը հայացքը չկտրելով հասուն արտերից։ Մենք անցանք լեռան մյուս լանջը, այստեղ արտեր չկային, տեղ-տեղ երևում էին քարակույտեր ու ապառաժ քարեր։



Նրանց արանքներում ձգվող հողաշերտերը ամբողջովին ծածկված էին մանր քարերով։

—Ահա այս հողերն էլ ենք ուզում ցանել,— շարունակեց նա։ Տրակտորիստները շտապեցնում են, իսկ կոլտնտեսականները զբաղված են բերքահավաքով։ Լավ է, շատ լավ է, որ դուք եկաք։

Նա մի անգամ ևս նայեց մեզ, կարծես ուզում էր հաշվել, թե քանի հոգի ենք մենք և երեք օրում ինչքան աշխատանք կարող ենք կատարել։

Նրա հայացքի մեջ գոհունակություն կար, մենք երեսունից ավել էինք։

—Պետք է հողամասը մաքրել քարերից,— վերջապես ասաց նա։ Իսկ մենք անհամբերությամբ սպասում էինք, թե ի՞նչ աշխատանք կարող է լինել այս մերկ լեռնալանջի վրա։

Անցանք աշխատանքի, ուրախ կատակներով ու սրախոսություններով, սկսեցինք հավաքել քարերը։ Այնպիսի ոգևորությամբ սկսեցինք աշխատել, որ բրիգադիրը հիացել էր։

Մեզանից ամեն մեկն աշխատում էր ավելի շատ հավաքել, ավելի մեծ քարեր հանել հողի կրծքից։

—Ա՛յն կողմ նայեցեք, ա՛յն կողմ,— հանկարծ լսվեց Գուրգենի սուր ձայնը։

Մենք բարձրացրինք գլուխներս. հողակտորի ծայրին մենակ կանգնել էր Սոխակն ու երազկոտ հայացքով նայում էր ճանապարհին։ Տեսնելով, որ մեր ուշադրությունն իր կողմն է, նա ծույլ կռացավ, մեծ դժվարությամբ վերցրեց մի քար, որը ձեռքից իսկույն ցած ընկավ։ Մեր ծիծաղն ու քրքջոցը շառաչացավ։

Այդ պահին Տիգրանն ու Արմենը մի մեծ քար էին հանում գետնից, երբ անսպասելի նրանք մի կողմ քաշվեցին, քարը գլորվեց ցած, ուղիղ դեպի Սոխակը։

—Սոխա՛կ, Սոխա՛կ,— գոչեցինք մենք ցույց տալով քարը։

Բայց մինչ մոլորված Սոխակը գլուխը կբարձրացներ, քարն հասավ նրան։

—Վա՜յ, վա՜յ, վա՜յ,— ճչաց նա ու պառկեց։

Մենք մոտեցանք։ Ընկեր Կամսարը արագ քանդեց կոշիկը, վեր բարձրացրեց անդրավարտիքը։ Ջերդված, կարմրած տեղեր չկային, բայց Սոխակը մի գլուխ գոռում էր.

—Վա՜յ, վա՜յ ոտքս, վա՜յ...

Քնարիկն ու Համլիկը գլխաշորերով կապեցին ոտքը. բրիգադիրն իսկույն սայլ լծել տվեց, մեջը փափուկ խոտ փռեցինք, Սոխակին դրինք սայլի վրա ու առոք-փառոք գյուղ ուղարկեցինք։

Ամբողջ օրը խոսում էինք նրա մասին։ Մի քա-



սիսը պնդում էին, որ իրոք քարը կպել է ոտքին, իսկ մեծ մասը գոռում էր, թե չի կպել. նա դիտմամբ արեց՝ աշխատանքից ազատվելու համար։

Երեկոյան գյուղ հասնելուն պես, վազեցինք Սոխակի մոտ։ Նա հանգիստ խումփացնում էր։ Տանտիրուհին պատմեց, որ բժիշկն ասել է՝ ոչինչ չկա...

Նորից քրքջոցից վեճը։ Սոխակն արթնացավ, թթված դեմքով նայեց դիմացը կանգնած Արմենին և շրջվեց մյուս կողմը։

Նա չէր սիրում Արմենին, վերջինս ամենից շատ էր ծաղրում նրան։

Մեր հարցերին, թե՝ ինչպես է ոտքը, նա տխուր պատասխանեց՝ ցավում է։

—Վաղն էլ չե՞ս դուրս գալու դաշտ,—հարցրեց Համայակը։

—Ո՛չ,—հազիվ լսելի ձայնով շշնջաց Սոխակը։

Համայակն աչքով արեց Արմենին։

—Դե լավ, ի՞նչ ես վրա տալիս,—ասացին աղջիկները,—գուցե իրոք ցավում է...

Նորից սկսեցին վիճել՝ ցավո՞ւմ է, թե՝ ոչ, քարը իրոք կպե՞լ է ոտքին, թե՝ ոչ։

Մի անգամ էլ Սոխակը վերմակի տակից գլուխը դուրս հանեց, խեղճ-խեղճ նայեց շուրջն ու ծածկվեց։

Մենք չէինք հավատում Արմենին, Ալեքսանին, Համայակին։ Ինչպե՞ս կարող է մարդ այդ հիանալի եղանակին հեռանալ ընկերներից, քաշվել մի անկյուն և մենակ կծկվել վերմակի տակ։ Մի՞թե հետաքրքիր չէին դաշտերը, գետում լողանալը, ընկերներով աշխատելը... Բաղով փլավ ուտելը...

—Ես գիտեմ, ես գիտեմ, թե նա ինչ համաշխարհային լողրն է,—նորից ծղրտում էր Արմենը։—Ա՛յ, կտեսնեք, ես կապացուցեմ, իսկապես կապացուցեմ։

Մենք քնեցինք բրիգադիրի նորակառույց տան մեծ պատշգամբում։ Գիշերվա կեսին ինչ-որ բան շարժվեց։ Մենք արթնացանք։ Մեր ոտքերին քսվելով սողում էին Արմենն ու Ալեքսանը։ Նրանք մեզ խնդրեցին լռել... Մենք շունչներս պահած հետևեցինք նրանց։ Արմենը մոտեցավ Սոխակի անկողնուն և զգուշությամբ ետ տարավ վերմակը։ Մենք գլուխներս երկարացրած սպասում էինք։ Լուսնի լույսի տակ երևում էր Սոխակի վիրավոր ոտքի սպիտակ փաթեթը։

—Ի՞նչ է ուզում անել,—վախեցած անհանգստանում էինք մենք։

—Սո՜ւսսս,—մատը բերանին դնելով խնդրում էր Արմենը։

Մի պահ տևող խորհրդավոր լռությունից հետո





Արմենը զգույշ քանդեց Սոխակի ոտքի վիրակապը և կապեց մյուս՝ առողջ ոտքին։

Բարեբախտաբար Սոխակը չարթնացավ...

Վաղն առավոտյան սկսեցինք պատրաստություն տեսնել դաշտ գնալու համար։ Արմենն ու Ալեքսանդրը փսփսում էին, երևում էր, որ գեշերվա դեպքի մասին հաղորդակից էին դարձրել բոլորին։ Մենք նորից բզբզում էինք Սոխակի շուրջը։

—Սոխա՛կ, ա՛յ Սոխա՛կ,—նրա անկողնուն մոտեցավ Արմենը,—քնա՞ծ ես, թե՝ արթուն։

—Ո՛չ, ո՛չ, քնած չի,—նրա փոխարեն պատասխանեց Հմայակը,—ի՞նչ քնած, սաս ամբողջ գիշերը ոտքի ցավից կարողացե՞լ է մի վայրկյան քնել...

—Սոխակ, ընկեր Կամսարն ասաց, որ քեզ քաղաք պիտի ուղարկենք այսօր, վեր կաց, ամ՚ումեքենան կալի մոտ քեզ է սպասում։ Վերցրու, սա էլ քեզ ձեռնափայտ, սրա օգնությամբ մի կերպ քայլիր, մինչև հասնես կալը։

Սոխակն ուրախացած բացեց աչքերը։ «Ինչ լավ է, հիմա Արմենն էլ այդպես հոգատար է իր նկատմամբ, երևի վերջապես խղճացել է իրեն»,—մտածում է նա ու հագնում շորերը։

Սոխակը տնքտնքալով շարունակում էր հագնըվել, իսկ մենք այնպես էինք շրջապատել նրան, որ խեղճը չգիտեր ուր նայեր մեր հայացքներից ազատվելու համար։

Վերջապես նա ոտքի կանգնեց և հենվելով ձեռնափայտին սկսեց կաղալ՝ փաթաթած ոտքն զգուշությամբ գետին դնելով։

—Օ՜յ, օ՜յ, օ՜յ,—դեմքը կնճռոտելով տնքտնքաց նա, երբ Արմենը կռացավ ու շոյեց «վիրավոր» ոտքը։

—Վա՜յ, ձեռք մի տա, ցավո՜ւմ է, ցավո՛ւմ...—էլ ո՞վ կարող էր պահել ծիծաղը։ Մենք քրքջում էինք, իսկ տղաները քաշքշում էին նրա ոտքը։ Սոխակն սկզբում պաշտպանվում էր և, ոչինչ չհասկանալով, գոռգոռում, բայց երբ Արմենն ասաց. «Է՛յ դու, համաշխարհային լո՛ղր, երեկ աջ ոտքդ էր ցավում, այսօր՝ ձա՞խ...» Սոխակը նոր միայն ուշադիր նայեց ոտքին և ինչ-որ բան կռահելով, գլուխը կախեց։

* * *

Անցել են տարիներ, բայց ես չեմ մոռանում իմ ժիր դասընկերներին, չեմ մոռանում նաև մեր Սոխակին և միշտ նրան հիշում եմ հենց այդպես՝ շրջապատված ընկերներով։ Նա տխուր ու գլխիկոր նայում է փաթաթված ոտքին, իսկ Արմենը, Ալեքսանդրը, Հմայակն ու մյուսները քաշքշում են ոտքն ու ծիծաղում։



# ԵՐԿՈՒ ԽՈՓ

ՎԱՐԴԱՆ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Փորձված գութանը երկար չարչարվեց,
Կռեց երկու խոփ ամուր երկաթից.
Գարնան մոտերքին՝ այնպես պատահեց,
Որ մի մարդ գնեց մեկը դրանցից։

Գյուղ բերեց խոփը ու դրեց գործի,
Ինչքան հող ուներ, վարեց վերջացրեց։
Սակայն մյուսը չաշխատեց երբեք,
Հենց դարբնոցում էլ հաց ժանգոտվեց։

Խոփերը մի օր երբ հանդիպեցին,
Ժանգոտ խոփն այսպես ասաց փայլունին.
— Դու լուսնի նման փայլում ես, եղբայր,
Այդպիսի հնարք որտեղի՞ց գտար։

— Շատ մի զարմանա, եթե աշխատես,
Դու էլ ինձ նման այսպես կփայլես։

# Տիկնիկի տոմսը

Վ. ՏԱԼՅԱՆ

Զարիկն ու մայրիկը
Տնից ելան դուրս,
Կանգառում նստեցին
Կարմիր տրոլեյբուս,
Որ մասուր շուտ հասնեն,
Հանկարծ չուշանան.
Մայրիկն էլ ճիշտ ժամին
Գնա գործարան։

Նստեցին՝ մոտեցավ
Տոմսավաճառը.
Զարիկը շուտ մեկնեց
Թղթի պատառը,
Թե՝ մի տոմս տվեք ինձ՝
Տիկնիկիս համար.
Անտոմս նա չի՞ գնա
Այսքան ճանապարհ...
Տոմս ծախող կինն ուրախ
Ժպտաց քթի տակ,
Թուղթն առավ ու նայեց,
Զավեց տոմսակ,
Թե՝ փոքր եք, աղջիկ ջան,
Տիկնիկդ էլ, դու էլ.
Անտոմս դուք կարող եք
Դեռ երթևեկել...

Խնդացին փոքր ու մեծ.
— Բան չկա, տվեք...
Զարիկն էլ հաստատեց.
— Փող է սա, գիտե՞ք...
Տեսեք, ա՛յ, համար կա,
Ե՛վ նկար, և՛ տառ...
Տոմս տվեք իսկական՝
Տիկնիկիս համար...

«Ինչո՞ւ են ծիծաղում,—
Ասաց նա մտքում.—
Բա մենք էլ ինչո՞վ ենք
Բան տանում բակում»...


Նկ. Դ. ՄԱԼԱՅԱՆԻ

# Միջնակ դիրք







Մ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Նկ. Գր. ԱՂԱՍՅԱՆԻ

Աշոտիկի կարծիքով, ով հասակով բարձր է, նա էլ ամենամեծն է։ Այ, օրինակ, նրանց ընտանիքում մեծը հայրիկն է և նա էլ ամենից բարձր հասակը ունի։ Հետո գալիս է մայրիկը, մայրիկից հետո՝ Էդիկը։

Իսկ Սասունիկը տան ամենափոքրն է, հասակով էլ ամենակարճը։

Ա՜խ, ինչ լավ կլիներ, եթե Էդիկի փոխարեն առաջինը ծնվեր Աշոտը։ Եվ հասակով կլիներ, ինչպես Էդիկը և կգնար դպրոց, ինչպես Էդիկն է գնում։

Ու, ընդհանրապես, ինչի՞ նման է միջնակ եղբայր լինելը, մեծին՝ լսիր, փոքրին՝ ներիր...

Օրինակ՝ անցյալ անգամ։

Մայրիկը ժամանակ չուներ Սասունով զբաղվելու։ Նա խնդրեց Աշոտին՝ Սասունիկի հետ խաղալ։ Աշոտը համաձայնվեց, ու վերցնելով խորանարդիկները, փոքրիկ եղբոր հետ սկսեցին փիսիկների նկարներ կազմել։

Սկզբում Սասունիկին այդ շատ դուր եկավ։ Նույնիսկ նա իր լեզվով բացատրեց.

— Միաու... միաու... ցէ՜։

Իսկ մի փոքր անց, հանկարծ, չգիտես ինչու, ոտքով խփեց խորանարդիկներին ու ցրիվ տվեց սենյակով մեկ։ Այստեղ Աշոտը խիստ բարկացավ, դեռ քիչ մնաց կռվեր էլ, բայց հենց որ հիշեց ինքը Սասունիկից մեծ է, անմիջապես ներեց նրան...

Ներելն ինչ հեշտ բան է։ Աշոտիկը միշտ էլ կների իր փոքրիկ եղբորը։ Կարևորը Էդիկն է, որին հարկավոր է միշտ լսել որպես մեծ եղբոր, և որը խանգարում է Աշոտին՝ տանը մեծ տղա լինել։ Ա՛յ, թե ինչ։

Այդ մասին Աշոտը երկար մտածեց։

Մի անգամ, ուշ երեկոյան, երբ բոլորը՝ հայրիկը, մայրիկը, Էդիկն ու Սասունիկը քնել էին, Աշոտը չքնեց։ Նա վեր կացավ իր անկողնուց, վերցրեց բազմոցի վրայից ազատ բարձերը և կամաց դրեց Էդիկի գլխի ու ոտքերի մոտ այնպես, որ նա այլևս հնարավորություն չունենա շարժվելու։

— Ա՛յ, դե գնա,— ուրախացավ Աշոտը, հիշելով մայրիկի խոսքերը, որ երեխաները ամեն գիշեր մեծանում են։— Ես կմեծանամ, Էդիկից էլ կանցնեմ, իսկ նա կմնա փոքր։

Առավոտյան Աշոտի տրամադրությունը ընկավ։ Ոչ մի տարբերություն, ինչպիսին կար Էդիկը, այնպես էլ մնացել էր Աշոտից բարձր։

Ի՞նչ անել, մնում էր հաշտվել վիճակի հետ։

Եվ Աշոտը հաշտվեց։

Բայց մի անգամ հայրիկը վրդովեց նրա հանգիստը։

Էդիկը պատմեց, որ իրենց դասարանում արտասանության մրցության մեջ նա գրավեց առաջին տեղը։ Հայրիկը շատ ուրախացավ։

— Ապրես, տղաս, այդպես էլ հարկավոր է։ Ամեն ինչում՝ աշխատանքում, դպրոցում, կարգապահության մեջ, միշտ աշխատիր լավը լինել, ամենալավը։ Թե չէ ինչի՞ նման է միջակությունը, ոչ այս է, ոչ՝ այն։ Ինչպես ասում են՝ ոչ միս է, ոչ՝ ոսկոր։

«Միջակություն... Ա՛յ թե ինչ։ Ուրեմն ես ոչ միս եմ, ոչ՝ ոսկոր,— սարսափած մտածեց Աշոտը։— Ախր ես միջնակ տղան եմ»...

Աշոտը լուռ դուրս եկավ սենյակից ու գնաց հարևան Վիկտորիա մորաքրոջ մոտ։ Նրանք ապրում էին միևնույն բնակարանում։ Վիկտորիա մորաքույրն ուներ Սեդա անունով մի աղջիկ, որի հետ Աշոտը միշտ խաղում էր։ Սեդան չորս տարեկան էր, Աշոտից մի տարի փոքր։ Նրանք միմյանց շատ էին սիրում, այդ պատճառով էլ Սեդան շատ ուրախացավ, երբ Աշոտն ասաց.

— Վիկտորիա մորաքույր, կուզե՞ք, որ ես մնայի ձեզ մոտ ու լինեի ձեր մեծ տղան։ Այո՞...

— Իհարկե, սիրունիկս,— պատասխանեց Վիկտորիա մորաքույրը։— Ո՞վ չի ուզի քեզ պես լավ տղա ունենալ։ Միայն թե պատմիր, ի՞նչ է պատահել, ինչո՞ւ հանկարծ այդպես որոշեցիր։

Աշոտիկը պատմեց։

— Ա՜,— բացականչեց մորաքույրը։— Այդ դեպքում մնա, մնա ինձ մոտ, փոքրիկս։

— Ես փոքրիկ չեմ, մորաքույր,— վիրավորված պատասխանեց Աշոտիկը,— ես մեծ եմ, այստեղ փոքրիկը Սեդան է։

— Ա՜խ, իսկապես, անուշիկս, ես այլևս չեմ ասի քեզ փոքրիկ։

Աշոտն անսահման ուրախության մեջ է։ Հենց Սեդան չի լսում նրան, մորաքույր Վիկտորիան հիշեցնում է՝ մեծին հարկավոր է լսել։

Ահա՛, խնդրեմ, ինչպես է կյանքում ամեն ինչ փոխվում։ Այնտեղ, իրենց ընտանիքում Աշոտիկը ոչ մեծն է, ոչ փոքրիկը, իսկ այստեղ նա ամեն ինչ է, նույնիսկ հարևան մորաքույրն էլ է նրան լսում։ Օրինակ՝ Աշոտի սիրտը խնձոր ուզեց, Վիկտորիա մորաքույրն անմիջապես հյուրասիրեց, մինչդեռ մայրիկը կասեր՝ համբերիր, ճաշից հետո։

Մի խոսքով Աշոտիկի երազներն իրականացան։ Նա երջանիկ է։ Մեկ տեսար՝ բժիշկ դարձավ, սկսեց ուշադրությամբ լսել Սեդային, քննել նրա առողջությունը, դուրս գրել դեղորայք, մեկ էլ խիստ միլիցիոների պես սկսեց հետևել կարգ ու կանոնին, բացատրել, որ մեծերին հարկավոր է լսել, հարգել, իրենց տեղը զիջել, չխանգարել փողոցային երթևեկությանը։ Եվ այդպես, նրանց խաղը երկար կշարունակվեր, եթե չխանգարեր Էդիկը։



— Այս ի՞նչ է, տուն գալու մասին չե՞ս մտածում,— հարցրեց նա ներս մտնելով։— Գնանք, մայրիկը կանչում է։

— Ո՛չ, չեմ գալիս։ Ես մնում եմ այստեղ՝ Վիկտորիա մորաքրոջ մոտ։ Տեսնում ես, ես նրա մեծ տղան եմ։

Մորաքույրը ժպտաց, իսկ Սեդան սկսեց խնդրել.

— Թող չգնա, մայրի՜կ, թող Աշոտիկը մեզ մոտ մնա։

— Ինչպե՞ս կարելի է, աղջիկս, չէ՞ որ նրան մայրիկն է կանչել։ Ավելի լավ է, Աշոտիկը թող հիմա գնա, հարցնի իր մայրիկին ու, եթե նա կհամաձայնվի, խնդրեմ, թող էլի գա։

— Բա որ թույլ չտա...

— Ոչինչ, Սեդա ջան, դու մի մտածիր,— հանգստացրեց նրան Աշոտը։— Ես էլի կգամ ու կմնամ ձեզ մոտ։

— Ա՛յ, ինչ լավ կլինի,— ուրախացավ Սեդան։— Քո մանճակալն էլ հետդ բեր։ Լա՞վ։

* * *

— Այս ինչ է, տղաս, դու մոռացե՞լ ես, որ քո քնելու ժամանակն է,— հարցրեց մայրիկը, երբ Աշոտը Էդիկի հետ ներս մտավ։

— Ո՛չ, չեմ մոռացել, ես եկել եմ մանճակալս տանելու։

— Մանճակա՞լդ։ Իսկ ո՞ւր պետք է տանես որ։

— Վիկտորիա մորաքրոջ մոտ... Ես ուզում եմ նրա մոտ ապրել, որովհետև նա ինձ բոլորից շատ է սիրում։

— Իսկ ո՞րտեղից գիտես, որ մենք քեզ շատ չենք սիրում,— միջամտեց հայրիկը,— հը՞։

— Ես ինքս եմ տեսնում։ Ա՛յ, Էդիկին շատ եք սիրում, դրա համար էլ ուզեցիք, որ ամենից առաջ նա ծնվի, շուտ դպրոց գնա ու ինձանից շուտ մեծանա... Իսկ ես... ես մնամ միջնակը... լինեմ միջակություն...

Վերջին խոսքերը Աշոտն համարյա լացակումած ասաց։

— Իսկ ինչ վատ է միջնակ լինելը,— հարցրեց հայրիկը։

— Ինչպե՜ս... դու ինքդ չասացի՞ր. «Ինչի՞ նման է միջակությունը, որը ոչ միս է, ոչ էլ՝ ոսկոր»... Հիշո՞ւմ ես։ Չէ՞ որ ես էլ միջակություն եմ, միջնակն եմ։

— Ահա թե ինչ,— բացականչեց հայրիկը, հիշելով իր խոսքերը։— Բայց դա քեզ չի վերաբերում, տղաս։ Չէ՞ որ դու միևնույն ժամանակ մեր մեծ տղան ես։

— Ի՞նչպես։

— Շատ պարզ։ Սասունիկը քո փոքր եղբայրն է, ճի՞շտ է։

— Ճիշտ է։

— Դե տեսնո՞ւմ ես, դու էլ նրա մեծ եղբայրն ես։ Եվ, երբ Սասունիկն էլ քեզ պես մեծանա ու ամեն ինչ հասկանա, մենք նրան էլ կասենք՝ Աշոտին պետք է լսել, նա քո մեծ եղբայրն է։

— Եվ նա էլ կլսի՞։

— Իհա՛րկե։

Ա՛յ քեզ նորություն։ Ի՞նչպես մինչև հիմա նա այդ մասին չի իմացել։ Չէ, Աշոտն այլևս ոչ մի տեղ չի գնա։

Ա՛յ, Աշոտիկը հենց մեծացավ, կդառնա բժիշկ, նոր դեղորայք կհնարի, որ մարդիկ երկա՜ր, երկա՜ր ապրեն։ Ա՜խ, միայն թե նա շուտ դպրոց գնա։

— Իսկ ե՞րբ պետք է դպրոց գնամ։

— Շուտով, շուտով, տղաս, երկու տարուց հետո։

— Ինչ լա՜վ է,— ուրախացավ Աշոտը։— Դե ուրեմն, վաղը ինձ համար դպրոցական հագուստ գնեք։ Լա՞վ։

— Անպայման,— համաձայնեց մայրիկն ու Էդիկին ուղարկեց, որ գնա հարևան մորաքրոջն ասի՝ Աշոտին չսպասեն, նա այլևս իրենց տնեցիներից չի խռովելու։

— Իսկ վաղը Սեդայի հետ մենք նորից կխաղանք,— ավելացրեց Աշոտն ու բարձր տրամադրությամբ պառկեց քնելու։



# ՈՍԿՅԱ ԾԱՌ



Ջ. ՌՈԴԱՐԻ

Միմոզա, չքնա՛ղ միմոզա,
Ո՞ւմ են քո ճյուղերը ծաղկած,
Քո ոսկյա ամեն մի ողկույզը
Արդյոք ո՞ւմ համար է կախված:
«Ոսկեցանց հյուսվել եմ սիրով
Ա՛յն մանկան համար, որ ինձ
Տենչում է անհուն կարոտով,
Երազկոտ աչքերով իր ջինջ:
Ծաղկում եմ ես ա՛յն մոր համար,
Որ քնքուշ իր սիրով վառման
Ուզում է, որ որդու առաջ
Քարե՛րն էլ ոսկի դառնան:
Ծաղկում եմ ա՛յն տատի համար;
Որ այժմ մենակ է ու ծեր,
Որ թոռի թաթիկը դալար
Այնքա՜ն է բռնել ու քայլել.
Քայլել ու ցույց է տվել
Ճամփաներն աշխարհի վրա,
Բայց թոռնիկն աշխարհ է ելել
Եվ վաղուց մոռացել նրան:
Աշխարհը շատ մեծ է, գիտեմ;
Տեսնելու շատ բաներ այնտեղ կան,

Նկ. Ս. ՍԱՖՅԱՆԻ

Բայց պահել դժվա՞ր է միթե՝
Տատիկից մի փոքրիկ նկար,
Որպեսզի ամեն երեկո
Մի անգամ ժպտաք, կամ դիտեք:
Ժպիտներն արագ են սուրում,
Քան փոստը, նամակը, գիտե՞ք:
Ժպտացեք դուք նրան միշտ պայծառ,
Դա մի՞թե դժվար է ձեզ համար:
Եվ կզգա ժպիտները նա ծեր,
Երազում կտեսնի, դոպն մոտ...
Դուք գիտե՛ք տատիկին այդ ծեր,
Վեր կացեք, գնացեք նրա մոտ:
Տան զանգը խափան է, չկա,
Դուք դուռը թակեցեք, կգա,
Տարեք ու նվիրեք նրան
Իմ ճյուղը՝ ոսկիները վրան.
Գարնան այդ ճյուղը ոսկեցանց
Կթվա նրան մի ողջ գանձ՝
Կպահի թոռների համար
Եվ սիրով նա կտա նրանց:

Իտալերենից թարգմ. Գ. ՎԻՐԱՊՅԱՆ

# ԻՄ ՀՈՐԹՈՒԿԸ

Գ. ՍՏԱՄԲՈԼՅԱՆ

Ինչքա՜ն չարն է իմ հորթուկը,
Ծայրը՝ փնջիկ, ցից պոչիկը.
Տեսե՛ք, ո՜նց է տրտինգ տալիս,
Տեսեք, ինչպե՜ս է պար գալիս:

Սերթ սուրում է քամու նման,
Երբ ճանճերն են նեղում նրան,



Սերթ կովելու ասես պատրաստ՝
Հպարտ կանգնում է նա զգաստ:

Սերթ զարմացած իրեն նայում,
Ջալիկ մորթով է հիանում,
Ցատկում է ու տրտինգ տալիս,
Տեսեք, ինչպե՜ս է պար գալիս:

# ԻՆՉՊԵՍ ՀԱՐԲԵՑԻՆ ՍԱԳԵՐԸ

Ա. ՍՏԵՓԱՆՅԱՆ

Նկ. Ա. ԲԵՔԱՐՅԱՆԻ

*Տատիկս իր կյանքի վերջին տարիներին հանկարծ որոշեց հավ պահել։ Քաղաքում, ինչպես գիտեք, բակերը մեծ մասամբ ընդհանուր են և տնային թռչուններ խնամելու համար՝ անհարմար։ Բայց դե իմ տատիկն էլ իր ասածի պառավ էր։ Որքան էլ որ շենքի բնակիչները բողոքում էին, տատիկս իր հավերից ձեռք չէր քաշում։*

*Նա, իհարկե, հանձն էր առնում իր մեղքն ու ամեն անգամ խոստանում բոլոր հավերը մորթել տալ։ Սակայն անցնում էին օրերը, և դարձյալ ամեն լուսադեմի, բոցավառ թևերը հաղթական թափահարելով, բակի կենտրոնում գլխ ծուղրուղու էր կանչում տատիկիս ցեղական, փարթամ աքաղաղը։ Նրա առնական գեղգեղանքից ոգևորված՝ հավերը ուրախ կրտցահարելով իրար, վազում էին անկյուններում բուջուջ անելու։ Շուտով լսվում էր կուտ տալու համար պատշգամբ դուրս եկած տատիկիս հրավերը՝ իր փաղաքուշ լիրիկական ելևէջներով։*

*— Ջո՛ւ, ջո՛ւ, ջո՛ւ ջո՜ւու... ծի՛պո, ծի՛պո, ծի՛պո...*

*— Ու՜ֆ, էլի սկսվեց,— նեղսրտած կողքից-կողք էին շուռ գալիս քնից արթնացող հարևանները։*

*Ամենից շատ, իհարկե, տուժում էին առաջին հարկերում բնակվողները։ Մաքրասեր տանտիկինների համբերությունը սպառվում էր.*

*— Սա ի՞նչ բան է, բակն իսկական թռչնաբուծական ֆերմա են դարձրել։ Ի՞նչ էլ անհերես են այդ անիրավները։ Քշա՜, քշա է՜,— զայրացած ճչում էին նրանք, ավելը ձեռքներին, խոհանոցներից ու պատշգամբներից դուրս թռցնելով կչկչան հավերին։*

*— Չե՛ն էլ սատկում, մի պրծնենք։*

*Տատիկը լռում էր, սրտի կսկիծով տանում իր ձու ածան, չաղլիկ հավերի գլխին թափվող անեծքները։*

*Նրանք՝ տատիկիս հասցեին տրտնջացող բոլոր այդ հարևանուհիները, եթե ուզենային, անկասկած կկարողանային հավերի ոտքն իսպառ կտրել բակից։ Բայց ահա թե ինչ էր լինում մի երկու ժամ հետո, երբ առօրյա կյանքը մտնում էր հունի մեջ, այսինքն, երբ տան տղամարդիկ գնում էին գործի, երեխաները՝ դպրոց, իսկ տանտիկինները վերադառնում էին շուկայից։*

*— Նունիկ, — հանկարծ ձայն էր տալիս տան չորրորդ հարկում ապրող մի կին իր թոռնիկին, — վազի՛ր ներքև, Գայան տատիկի մոտ, փոխարինաբար երկու ձու բեր։ Ասա, կոտլետի համար է, տատիկս մոռացել է շուկայից գնել։*

*— Աշոտ, — վերև էր կանչում իր տղային մի ուրիշ տանտիկին, — Աշոտ, հացի փշրանքն առ տար Գայան տատիկին, թող հավերին տա, մեղք են։*

*— Գայան տատիկի հավի ձվերը հիանալի են, թարմ, խոշոր, մաքուր, գիտես, որ հաց, գարի ու եգիպտացորեն է կերցնում, — գովում էր երրորդը։*

*— Գայան տատիկն ուղղակի շատ օգնություն է, — ծիծաղելով հաստատում էր չորրորդը։ Եվ բարկացայտ ճիչերից խաղաղված իմ Գայան տատիկի հավերը, նորից համարձակ ու սիգաճեմ օրորվելով սկսում էին բակում կուտ որոնել։*

*Իմ թռչնասեր տատիկը տեսնում էր հարևանուհիների խանդաղատանքն իր հավերի նկատմամբ, ուստի մի օր էլ, փոխանակ վերջ տալու նրանց, շուկայից եկավ և, ի սարսափ մեզ, հետը բերեց սագի երկու ճուտ։*





— Դրանք ինչի՞ համար են,— աչքերը չռեց հայրս,— դրա՞նց էլ պիտի պահես։

— Բա ո՞նց։ Գիտե՞ս ինչ բմբուլ ունեն։ Թող գնան, հավերին խառնվեն մեծանան, աշնանը կմորթենք ու բմբուլն էլ կլցնենք բարձի մեջ։

Հայրս կորցրեց համբերությունը։

— Մայրիկ, դու հասկանու՞մ ես, ինչ ես անում, դու ուզում ես մեծ իրարանցու՞մ սարքել, դու...

— Քո բանը չի,— հանկարծ բարկացավ տատիկը,— ո՞վ է իմացել տղամարդը խառնվի կնկա գործերին։ Գնա քո աշակերտների մոտ, գնա դպրոցը դաս տուր, գնա՛։

Հայրս հուսահատ թափ տվեց ձեռքը, շուռ եկավ և, իսկապես, գնաց դպրոց։

Տատիկս մեծ տաշտով լի ջուր դրեց բակում, որ սագերը լողանան, իր ձեռքով շինած հավաբնում տեղ պատրաստեց նրանց համար և շարունակեց սիրով խնամել իր հին ու նոր թևավորներին։

Ամռան մի շոգ օր, ես ու փոքր քույրս պատուհանի մոտ նստած, պատրաստվում էինք տարեվերջի քննություններին։ Շուրջը լռություն էր տիրում։ Բաց պատուհանից միայն գալիս էր բակում քուջուջ անող մեր հավերի ծույլ կղկղոցը։ Տատիկը տանը չէր։ Նա հավերի և երկու մնացած սագերի խնամքը հանձնել էր մեզ ու գնացել էր հյուր։ Դե մենք էլ դաս էինք սովորում, հո չէինք կարող ամբողջ ժամանակ վազել հավերի ու սագերի ետևից։ Այդպես խորասուզված սերտում էինք հայոց լեզվի քերականությունը, երբ հանկարծ դրսից լսեցինք տուն վերադարձող տատիկի ողբը.

— Վո՜ւյ, քոռանամ ես, վո՜ւյ, աման, էս ի՞նչ են արել, վա՜յ, իմ թառլան սագեր։

Մենք դասագրքերը թողած, անմիջապես դուրս վազեցինք։ Պատշգամբում, կիզիչ արևի տակ, երկար վզները ձգած՝ անշարժ մեկնվել էին մեր երկու ճերմակ սագերը։

— Խեղճեր, կարծես սատկել են,— ասաց քույրս ու մատով զգույշ դիպավ նրանց թևերին։

— Սատկել են, հապա ինչ, էն էլ ոնց են սատկել,— լացակումած հաստատեց տատիկս,— անաստվածներ։ Բա դուք ի՞նչ էիք անում, ինչո՞ւ թողեցիք, որ լակոտները քարով խփեն։ Վո՜ւյ, վո՜ւյ, խեղճ հայվաններ, ո՜նց էլ եկել ընկել են իրենց տան շեմքին և էնպես հոգիները փչել։

Տատիկը կամաց ողբում էր, իսկ ես ու քույրս հանցավորի պես նայում էինք իրար։ Իսկապես, ի՞նչ էր պատահել մեր սագերին։ Չէինք կարծում, որ բակի չարաճճիները խփած լինեին. ախր քարի ոչ մի հետք չկար նրանց վրա։ Ավելի շուտ հարևաններից մեկը թունավորել էր խեղճերին, որպեսզի ազատվեին աղմուկից ու կեղտից։

— Հենց այդպես էլ եղել է,— նորից հաստատեց մեր վշտահար տատիկը և այլևս ժամանակ չկորցնելով՝ արագ փետրեց սագերի վզից փափուկ բմբուլներն ու տխուր ասաց.

— Տարեք գցեք ցախանոցը, այստեղ շոգ է, կհոտեն։

Մինչև երեկո նա չէր դադարում ցածրաձայն ողբալ ու ինքն իրեն զանազան ենթադրություններ անելով՝ խփել ծնկներին։ Հայրիկի տուն գալուց հետո, մի քիչ հանդարտվեց





և գնաց դուրս, վերջը սրտացավ հարևանուհիներից մեկին ու մեկին պատմելու: Հազիվ էր ոտքը պատշգամբ դրել, երբ անսպասելի լսեցին նրա տարօրինակ, վախեցած մրմունջը.

— Մեղա՜ աստծու, մեղա՜, մեղա, մեղա՜ աստծու: Բշա՜, յա՜, աչքիս են երևում, ինչ է, բշա՜...

Տատիկը սրբում էր աչքերը, շտապ-շտապ խաչակնքում էր սարսափից երկարած դեմքն ու մեջքով ետ-ետ գալիս էր դեպի սենյակ:

— Երևի հիմա էլ հավերն են կատաղել,— ծիծաղը զսպելով նկատեց քույրս և ակամա հետաքրքրությամբ դուրս թռավ: Նույն րոպեին էլ լսվեց նրա զարմացած ճիչը.

— Հրա՜շք, հրա՜շք: Այստեղ եկեք, սագերը հարություն են առել:

Պատշգամբում, խոհանոցի դռների առաջ, փետրահան շլինքները երկարած՝ կանգնել էին մեր ցախանոց նետած սագերը և կտուցները խեղճ-խեղճ խփելով գետնին, սովորականի պես կուտ էին խնդրում տատիկից: Տատիկը չէր հավատում տեսածին և գլուխ շարունակում էր փեշերը թափահարելով ետ քշել հանդերձյալ կյանքից ետ վերադարձած իր սիրելիներին.

— Բշա՜, անիծվածնե՛ր, ո՞ր եք եկել, բշա՜...

Մենք ծիծաղում էինք: Ծիծաղում էին մեր աղմուկի վրա բակ դուրս թափված բոլոր հարևանները իրենց կանանց, երեխաների հետ: Չորս կողմը չտեսնված մի հրճվանք ու ցնծություն էր: Առաջինը լրջացավ մեր հայրիկը.

— Պետք է այդ թշվառներին շտապ մորթել, — ասաց նա, — թե չէ կարող են իսկապես սատկել, վրաներն էլ հալ չկա:

— Իսկապես, հարևան, ես էլ եմ համաձայն երեկոյան խնձորով ու սագի մսով տապակած ուտելուն, այդ չաղլիկները մեզ շատ են նեղություն տվել, — կատակեց հայրիկի կողքին կանգնած մեր ամենամոտիկ դրացին, և սագերի պատմությունը, կարծես թե, այդպես էլ ավարտվեց:

Նրանց սատկելու և նորից հարություն առնելու գաղտնիքը բացվեց հետևյալ օրը: Սագի տապակածով մեզ մոտ հավաքված հյուրերին պատվելու համար, տատիկը որոշեց բերել իր պատրաստած հռչակավոր բալօղուց և քրոջս հետ գնաց մթերանոց: Այնտեղ նրանց սպասում էր նոր հիասթափություն: Մթերանոցի դարակից ընկել ու ջարդվել էր բալօղու երեք լիտրանոց ահագին շիշը: Բալի հատիկները տարածվել էին հատակի վրա, այս ու այն կողմ, իսկ կպչուն ու կարմիր հյութը ծծվել ու չորացել էր տախտակների արանքում: Զարմանալին այն էր, որ հատիկների մի մասը կարծես կտցահարված լինեին, մի մասն էլ... Տատիկը հանկարծ բռնեց գլուխը. չէ՞ որ երեկ, հյուր գնալուց առաջ մոռացել էր մթերանոցի դուռը պինդ փակել և ահա օգտվելով նրա բացակայությունից, սագերը մտել էին ներս, պատահմամբ վայր գլորել շիշը, բալի հատիկներն անուշ արել ու հարբել...

— Իսկ մենք կարծում էինք, թե սատկել են, — բրբջում էր քույրս: Խեղճ տատիկը ոչ մի կերպ չէր կարողանում կատարվածին հավատալ և ամբողջ ժամանակ ապշահար կրկնում էր.

— Յա՜, սա էլ նոր բան է, բա թռչունն էլ մարդու պես կհարբի՞:



## ԳԻՇԵՐՆ ԱՆՏԱՌՈՒՄ

ՄՆԱՑԱԿԱՆ ԹԱՐՅԱՆ

Գիշեր է: Քնած է անտառը զառամած,
Լոկ հեռվից թփերն են շրշում,
Ալիքվում, հոսում է աստղերով զմայլված՝
Լուսնային գետակը խոսուն:

Հինավուրց անտառում քնել են բոլորը,
Քնել են, ոչ ոք չի շրջում,
Քնել է սկյուռը, քնել է և լորը,
Մոր կողքին եղնիկն է ննջում:

Հմայիչ գիշեր է, խաղաղ է անսահման,
Աստղերն են երկնքում նազում,
Բոլորին, բոլորին՝ գթասիրտ մոր նման,
Լուսինը օրոր է ասում:




Լ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

— Ամեն ինչ վերցրե՞լ եք, ոչինչ չե՞ք մոռացել,— հարցրեց ընկեր Մարուքյանը, երբ բոլորը տեղավորվել էին ավտոմեքենայի մեջ:

— Ամեն ինչ, ամեն ինչ,— այս ու այն կողմից ձայնեցին երեխաները:

— Ուրեմն՝ կարող ենք շարժվել:

Ավտոմեքենան պոկվեց տեղից: Երեխաների սրտերում նույնպես կարծես մի բան պոկվեց, հալվեց: Նրանք բոլորն էլ համակված էին միատեսակ զգացմունքով, որպիսին ունենում է մարդ մեծ ճանապարհորդությունից առաջ: Նրանց ականջում դեռ հնչում էին ընկեր Մարուքյանի խոսքերը. «Տուրիստը պետք է լինի համարձակ, տոկուն, ճարպիկ ու ընկերասեր»:

Ավտոմեքենայում ժամանակն անցավ աննկատ: Ուրախ երգն ու զրույցը կարծես կարճացրին ճանապարհը, և բոլորը շատ զարմացան, երբ Սվետլանան հանկարծ բացականչեց.

— Սևա՜նը, լիճը երևո՜ւմ է:

Հեռվում կապույտ ցոլքով փայլում էր լիճը:

Քիչ անց ավտոմեքենան կանգ առավ:

— Ահա այստեղից պետք է սկսենք մեր հետիոտն արշավը,— ասաց ընկեր Մարուքյանը, երբ բոլորն իջել էին մեքենայից:

Երեխաների աչքերի առջև ձգվում էր մի հսկայական լեռնաշղթա: Իսկ ինչքա՜ն փոքր էին Գեղամա լեռները քարտեզի վրա:

Փոքրիկ նախաճաշից ու հանգստից հետո, պատանի տուրիստների ութ հոգուց բաղկացած արշավախումբը ուղղություն վերցրեց դեպի Աժդահակ լեռան գագաթը:

Դժվար էին առաջին կիլոմետրերը, անսովորությունից ցավում էին ուսերը, ուսապարկը խիստ ծանր էր թվում, իսկ վերելքը գնալով դժվարանում էր: Եվ, ա՜յ քեզ տարօրինակ բա՜ն. լեռան գագաթը, որ պարզ երևում էր ստորոտից, չկար ու չկար: Ամեն մի բարձունքի ետևից ծնվում էր նորը, և թվում էր, թե վերջ չկա դրանց: Երեխաներն արդեն հոգնել էին ու ծարավել, բայց ո՛չ ոք չէր տրտնջում: Ջուր կարելի է խմել միայն երրորդ կանգառում, պետք էր համբերել:

Արևն արդեն մայր էր մտել, երբ մեր տուրիստները հասան լեռան գագաթը: Դա նրանց առաջին հաղթանակն էր. պետք էր ներկա լինել, տեսնելու համար նրանց հրճվանքը: Եվ իսկապես, մի՞թե լեռնային տուրիստի համար կարող է լինել ավելի հաճելի բան, քան նվաճված բարձունքի գագաթից ցած նայելը: Լեռան գագաթին, ըստ տուրիստների շրջանում ընդունված տրադիցիայի, նրանք թողեցին երկու տուփ լուցկի:

Գիշերն անցկացրին հովիվների վրաններում, իսկ վաղ առավոտյան նորից վերցրին ուսապարկերը և ճանապարհը շարունակեցին լեռնային շավիղներով: Սքանչելի էր հայրենի բնությունը. կանաչապատ, զմրուխտե մարգագետինների կողքին կարելի էր հանդիպել ձյունածածկ, սպիտակ տարածությունների, սեպաձև, ահավոր ժայռերի կողքին՝ խայտաբղետ, գույնզգույն ծաղիկների անծայր դաշտերի: Իսկ լեռնային զով քամի՜ն, սառնորակ աղբյուրնե՜րը: Բայց միայն բնությունը չէր հետաքրքրում մեր տուրիստներին: Նրանք կազմում էին իրենց անցած վայրերի աշխարհագրական բնութագիրը. Հենրիկը չափում էր օդի ջերմաստիճանը, Ռաֆիկը՝ քամու ուժը, Վիկտորը և Անատոլին լեռնային հանքատեսակներ էին հավաքում, իսկ Սվետլանան ու Նինան՝ ծաղիկներ ու միջատներ՝ կոլեկցիաների համար:

Օրերը գլորվեցին աննկատ, և երեխաները իրենք էլ չզգացին, թե ինչպես հասան Բասարգեչար: Այստեղ արդեն նրանց էր սպասում Երևանից եկած ավտոմեքենան, որ նրանց համար պաշար էր բերել: Մի օր Բասարգեչարում մնալուց հետո, պատանի տուրիստները ծանրացած ուսապարկերով շարունակեցին ճանապարհը Սևանա լճի արևելյան ափերով դեպի ադրբեջանական սահմանը: Այստեղ նրանք հանդիպեցին անտառի: Իսկույն խարույկ վառեցին: Քիչ հետո եռոտանու վրա ամրացված կաթսայի մեջ բլբլթոցով եռում էր ճաշը, հաճելի բուրմունք տարածելով շրջապատում: Վաղուց է,

տափ կերակուր չէին կերել: Մեծ ախորժակով ճաշեցին, հանգստացան, երգեցին խարույկի շուրջը:

Անտառը գտնվում էր ձորագլխին: Տուրիստները որոշեցին իջնել գետափ և այնտեղ խփել վրանները: Բայց մի բան անսպասելիորեն փոխեց նրանց որոշումը: Նինա Օվչարենկոն հանկարծ իրեն վատ զգաց: Նախ սկսվեց ուժեղ գլխացավ և ապա սրտախառնուքը: Ի՞նչ պատահեց աղջկան. քիչ առաջ այնպես կայտառ էր, երգում էր, կատակում, ծիծաղում: Արագորեն կանգնեցրին վրանները, հիվանդին պառկեցրին: Երեխաները տագնապով նայում էին մեկ իրենց ընկերուհուն, մեկ՝ իրենց ուսուցչին:

— Թունավորվել է,—երկարատև լռությունից հետո ասաց ընկեր Մարուքյանը,—բայց ինչի՞ց:

Մինչ տղաները տարակուսանքով իրար էին նայում և մեկ-մեկ հիշում, թե այդ օրը ինչ էին կերել, Նինան բացեց աչքերը և դժվարությամբ ասաց.

— Ես եմ մեղավոր... շատ ծարավ էի, բերանս չորացել էր, և ես... ես կերա այն սև հատապտուղներից, առանց ձեզ հարցնելու...

Պարզ էր, հատապտուղները թունավոր էին եղել: Բայց աղջկան հանդիմանելու ժամանակը չէր, պետք էր օգնել նրան:

— Ա՛յ, եթե մի քիչ մածուն լինե՛ր,— ասաց Սվետլանան:

— Մենք կվազենք հովիվների մոտ, նրանք հեռու չեն այստեղից,—առաջարկեց Վիկտորը, բռնելով Անատոլի Սաշենկոյի թևը:

— Նրանք դպրոցի լավագույն վազողներն էին: Զանցած կես ժամ նրանք վերադարձան և թաշկինակի մեջ փաթաթված ինչ-որ բան դնելով Նինայի առջև ասացին.

— Կեր և կլավանաս:

Բոլորը զարմացած նայեցին նրանց. թաշկինակի մեջ մորի էր:

— Հովիվների մոտ կաթ՝ ինչքան ուզեք, իսկ մածուն չկար,—հևիհև բացատրեց Անատոլին:—Նրանք ասացին, որ այսպիսի դեպքում մորին շատ լավ է օգնում: Տեղը ցույց տվեցին, մենք էլ քաղեցինք ու բերինք:

Մորին իսկապես օգնեց:

Հաջորդ ամբողջ օրը նրանք ստիպված եղան մնալ գետափում: Կեսօրին, չգիտես որտեղից, անսպասելի արագությամբ կուտակվեցին ամպերը, երկինքը որոտաց, և սկսվեց մի այնպիսի կարկտախառն անձրև, որպիսին նրանք երբեք չէին տեսել: Զանցած մի քանի րոպե անձրևաջուրը թոխոջալով հոսում էր վրանի միջով: Երեխաները մինչև ծնկները թրջվել էին:

Բարեբախտաբար անձրևը շուտ կտրվեց: Ամպերի արանքից արևը դուրս եկավ նույնպիսի արագությամբ, ինչպիսի արագությամբ անհետացել էր: Մեծ դժվարությամբ հաջողվեց կրակ վառել: Երբ կրակի շուրջը բոլորած չորացնում էին հագուստները, տղաներից մեկը առաջարկեց նկարահանվել այդ վիճակում:

— Հետո կպատմենք դպրոցում, չեն հավատա, որ այսպիսի դժվարություններ ենք հաղթահարել,—ասաց նա:

Պատանի տուրիստները ոտքով կտրել անցել էին արդեն մոտ 350 կիլոմետր: Իսկ քանի՛-քանի՛ դժվարին վերելքներ ու վայրէջքներ էին կատարել նրանք:

Ահա և հաղթահարված է վերջին վերելքը: Պատանի տուրիստները Դուշեթյանի լեռնահանքերում են: Այստեղ հետաքրքիր շատ բան տեսան նրանք: Երեխաները հատկապես մեծ հետաքրքրությամբ դիտեցին օդի մեջ պղնձալարերից կախված վագոնետկաների շարժումը, որոնք մի քանի կիլոմետրի վրա լեռնահանք էին տեղափոխում:

Այստեղ պատանի տուրիստները ավտոմեքենայով գնացին Կիրովաքան, իսկ երկու օր հետո



գնացքը նրանց տանում էր Մոչի՝ տուրիստների համամիութենական հավաքին:

* * *

Ամեն տարի ամռանը Ծաղկաձորի գեղատեսիլ անկյուններից մեկում դուք կտեսնեք մի միայնակ ճամբար: Բոլորովին այլ կյանքով են ապրում այստեղ ճամբարականները. այլ է նրանց օրվա ռեժիմը, նրանց հետաքրքրությունները, նրանց նպատակը:

Դա Երևանի Մռավյանի անվան դպրոցի տուրիստների ճամբարն է:

Հետաքրքիր և ուրախ է կյանքը տուրիստական ճամբարում. զրույցներ ու դասախոսություններ, փորձնական արշավներ դեպի մոտակա գագաթները, տուրիստին անհրաժեշտ հմտությունների ձեռք բերում, սպորտային մրցումներ, խարույկ, երգ ու պար,— ահա պատանի տուրիստի սովորական օրը: Մեկ ամիս այստեղ լավ մարզվելուց ու նախապատրաստվելուց հետո, սկսվում է վաղուց սպասված արշավը:

Քանի՜-քանի՜ հետիոտն արշավներ է կազմակերպել դպրոցի տուրիստական սեկցիան. Երևան—Կիրովաքան, Երևան—Գորիս, Դիլին—Արագած, Երևան—Գառնի—Գեղարդ, Միխանա—Կիրովական և այլ հեռավոր ու մոտակա արշավներ: Եթե գումարենք այն բոլոր կիլոմետրերը, որ կտրել ու անցել են պատանի տուրիստները, ապա այդ թիվը կհասնի մի քանի հազարի: Իսկ պատմելով մի՞թե կարտահայտես այն բազմաթիվ հաճույքներն ու տպավորությունները, որ ստանում են նրանք այդ արշավների ժամանակ: Այդ բանին զգալու համար պետք է տուրիստ լինել:



# ԵՐԵՔ ՈՍԿԵ ՏԻԿՆԻԿՆԵՐ





(Հնդկական հեքիաթ)

Նկ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆԻ

Ասում են մի փադիշահ ուզում էր իմանալ, թե խելո՞ք են արդյոք իր հարևան սուլթանի հպատակները։ Դրա համար նրան նվեր ուղարկեց երեք ոսկե տիկնիկ։ Այդ տիկնիկները շատ նման էին իրար՝ թե տեսքով, թե չափերով և թե քաշով. միայն թե փադիշահը հրամայել էր հայտնել, որ նրանց գները տարբեր են. մի տիկնիկը էժան է, մյուսը՝ թանկ, երրորդը՝ ավելի թանկ։ Նա խնդրել էր ասել, թե՞ ինչու է այդպես։

Սուլթանը զարմացավ այդ նվերի վրա և հրամայեց պալատականներին՝ իմանալ, թե ինչո՞վ է մի տիկնիկը տարբերվում մյուսից։ Պալատականները զննեցին երեք տիկնիկն էլ և գտան, որ նրանց մեջ ոչ մի տարբերություն չկա։

Շուտով այդ նվերի լուրը տարածվեց ամբողջ քաղաքում։ Եվ ահա, մի աղքատ պատանի, որին բանտ էին նստեցրել մի չնչին զանցանքի համար, խնդրեց հայտնել սուլթանին, որ եթե իրեն թույլ տան տիկնիկները զննել, ապա նա, աստծու և թագավորի շնորհիվ, կիմանա, թե ինչ տարբերություններ կան նրանց մեջ։ «Եվ եթե ես ճիշտ դուրս գամ,—ասել էր նա,—թող ինձ բանտից ազատեն»։

Սուլթանը հրամայեց պատանուն բերել պալատ. բերին նաև տիկնիկները և դրին նրա առջև։ Պատանին զննեց նրանց և նկատեց, որ նրանց երեքի ականջների մեջ էլ անցք էր բացած։ Այդ ժամանակ նա վերցրեց մի ծղոտ և մտցրեց տիկնիկներից մեկի ականջը։ Ծղոտի ծայրը դուրս եկավ տիկնիկի բերանից։ Ապա ծղոտը մտցրեց մյուս տիկնիկի ականջը և ծղոտի ծայրը դուրս եկավ նրա մյուս ականջից։

Վերջապես նա ծղոտը մտցրեց երրորդ տիկնիկի ականջը և ամբողջ ծղոտը մնաց տիկնիկի փորում։

Այդ ժամանակ պատանին հայտնեց.

—Ձերդ մեծություն։ Այդ տիկնիկները նման են մարդկանց։ Առաջին տիկնիկը նման է նրան, որը բավական է մի բան լսի, անմիջապես կպատմի ամեն տեղ և ամենքին։ Այդպիսի մարդուն չի կարելի վստահել։ Այդ պատճառով էլ այս տիկնիկի գինը մեծ չէ։ Երկրորդ տիկնիկը նման է նրան, որի մի ականջից ուրիշի ասածները մտնում, մյուսից դուրս են գալիս։ Այդ մարդն անհոգ է, նա ուրիշի խոսքերին ուշադրություն չի դարձնում և խորհուրդներ չի լսում։ Իսկ երրորդ տիկնիկը նման է այնպիսի մարդու, որը ինչ էլ որ լսի, իր մեջ է պահում։ Այդ մարդը արժանի է վստահության, արժանավոր է և պատկառելի։ Այդ պատճառով էլ այս տիկնիկի գինն ամենքից բարձր է։

Լսեց նրան սուլթանը և ուրախացավ։ Ամբողջ արքունիքը գովեց պատանուն։ Եվ սուլթանը հրամայեց ամեն մի տիկնիկի վրա գրել, թե որն է էժանը, որը՝ թանկը և որն՝ ամենաթանկը և վերադարձրեց նրանք փադիշահին, որից նվեր էր ստացել։ Իսկ պատանուն ազատեց բանտից և պահեց իր մոտ։

# ՎԱՃԱՌԱԿԱՆԸ և ԿԱՊԻԿՆԵՐԸ

(Հնդկական հեքիաթ)

Մի վաճառական նստեց ծառի ստվերում հանգստանալու և պարկով ապրանքը դրեց գետին։ Իսկ այդ պարկը բերնե-բերան լիքն էր կարմիր գլխարկներով։ Նա դրանք տանում էր հարևան քաղաքը վաճառելու։ Հենց այդպիսի մի կարմիր գլխարկ էլ նրա գլխին էր։ Նա նստեց, նստեց, հետո պառկեց։ Փչում էր զով քամին, քուն բերում ճամփորդին։ Նա քնեց։

Իսկ նրա գլխավերևում, ծառի ճյուղերին նստել էին կապիկները և աչքերը չռել նրա վրա։ Հենց որ վաճառականը քնեց, կապիկները թռան ցած, խլխլեցին գլխարկները և նորից հավաքվեցին ծառի

վրա։ Գլխարկները քաշեցին գլուխները, սկսեցին ճյուղից-ճյուղ թռչկոտել ու վազվզել։ Նրանք ամբողջ ջունգլիները լցրեցին աղմուկով։

Վաճառականը զարթնեց ճղ-ճղոցից, նայեց՝ պարկը դատարկ էր, գլխարկների հետքն՝ անգամ չէր մնացել։ «Այս ի՞նչ հրաշք է, մտածեց նա,— ո՞ւր կորան իմ գլխարկները։ Մի՞թե մեկը գողացավ»։ Նայեց վերև, ի՞նչ տեսնի՝ կապիկները իր գլխարկները ծածկած, թռչկոտում են ծառից ծառ։

Էլ ի՞նչ ասես, որ նա չարեց, ի՞նչ կերպ ասես, չվախեցրեց կապիկներին, չկարողացավ և ոչ մի գլխարկ ետ առնել։ Բարկացավ, վրդովված քաշեց գլխից իր գլխարկը և խփեց գետին, գոչելով.

— Միանգամից իմ գլխարկն էլ տարեք, ինչի՞ս է պետք սա, այս մեկը։

Կապիկները սիրում են ընդօրինակել մարդկանց։ Վաճառականը հազիվ էր գլխից հանել գլխարկը, երբ բոլոր կապիկները նույն ակնթարթում հանեցին իրենցը ու նետեցին ցած։ Վաճառականը հավաքեց դրանք, դրեց պարկն ու շատ գոհ շարունակեց իր ճամփան։

Թարգմ. Ա. ՍՐԱՊՅԱՆ






## ԾՐՆՈՒ ՄԵՏՐԱՆՈՑ ԽՂՃՅՈՒՄ

Հնդիկ կենդանաբան Դաս Գունդիի հետազոտություններում նշվում է, որ գոմեշները առաջին անգամ ընտելացվել են Հնդկաստանում, դեռ սրանից 3000 տարի առաջ։

1955 թվականի տվյալներով, ամբողջ աշխարհում կա 77 միլիոն ընտանի գոմեշ, որից միայն Հնդկաստանում՝ 50 միլիոն։ Գոմեշներ կան նաև Չինաստանում, Ինդոնեզիայում, Բուլղարիայում, Ռումինիայում, Սիրիայում, Ցեյլոնում, Պակիստանում, Իրանում և այլ երկրներում։



Սովետական Միությունում գոմեշներ կան Կովկասում, որոնցից 60%-ը՝ Ադրբեջանում։

Բացի ընտանի գոմեշներից, կան նաև վայրի գոմեշներ, որոնք ապրում են գլխավորապես Հնդկաստանի, Հաբեշստանի և մերձարևադարձային այլ երկրների անտառներում։

Ընտանի գոմեշը տալիս է ոչ միայն բարձր որակի կաթ և կաշի, այլև շատ երկրներում նա համարվում է որպես քաշող և փոխադրող ուժ։ Օրինակ, Հնդկաստանում ճանապարհներին կարելի է տեսնել բազմաթիվ գոմեշների քարավաններ, որոնք տեղափոխում են երկրի ներսում փոխադրվող բեռների 45 տոկոսը։

Թեև գոմեշը համեմատաբար դանդաղաշարժ կենդանի է, բայց շնորհիվ իր բացառիկ ուժի և դիմացկունության, բրնձի դաշտերում ու ճահիճներում կատարում

է ամենածանր աշխատանքը:

Կան գոմեշների բազմաթիվ տեսակներ: Հնդկաստանում կարելի է հանդիպել գոմեշների, որոնց եղջյուրների երկարությունը հասնում է մինչև 2 մետրի: Եթե ժամանակին այդ գոմեշների եղջյուրները չկտրեն կամ չծռեն դեպի ետ, ապա հնարավոր չի լինի նրանց փողոցով կամ սովորական ճանապարհով տանել:

## ՏՈՒԿՈՒԼԻ

Հաբեշստանի որոշ նահանգներում, գյուղացիները իրենց տների շուրջը ցանկապատում են ոչ թե քարով կամ փայտով, այլ փշերով:

Կապիկը կարող է մագլցել ամենաբարձր պատը կամ ծառը,



բայց փուշը նրա թշնամին է: Նա ոչ մի բանից այնքան չի վախենում, որքան փշից:

Այսպիսի ցանկապատը կոչվում է տուկուլի, որը նշանակում է փշե պատ:

## ՀԱՎԻՏԵՆԱԿԱՆ ԳԱՐՈՒՆ

Հաբեշստանը գտնվում է Աֆրիկայի Արևելյան մասում և համարվում է աշխարհի ամենաշոգ երկրներից մեկը: Սակայն զարմանալին այն է, որ նրա մայրաքաղաք Ադիս Աբեբայում տարվա բոլոր եղանակներին կանաչ է լինում, իսկ ջերմաստիճանը +25-ից չի անցնում:

Քաղաքի շուրջը աճում են մշտադալար ծառեր ու ծաղիկներ: Հենց դրա համար էլ տեղացիները քաղաքի անունը դրել են Ադիս Աբեբա, որը նշանակում է անթառամ ծաղիկ կամ հավիտենական գարուն:

## ՈՒՌԿԱՆ ՍԱՐԴԻ ԹԵԼԻՑ

Օվկիանոսային շատ կղզիներում բնակիչները ձուկ որսալու համար օգտագործում են մերձարևադարձային անտառներում ապրող խոշոր սարդերի հյուսած ցանցը:

Ձկնորսները նախօրոք բամբուկի ցողուններից մեկ մետր տրամագծով շրջանակ են պատրաստում, ապա տանում անտառ: Կարճ ժամանակից հետո սարդերը այդ շրջանակի վրա ցանց են հյուսում: Ձկնորսն այդ ցանցը ձեռքին նստում է լճափին: Հենց որ ձկները երևում են, նա ուռկանը զգուշությամբ անց է կացնում նրանց տակով և ճարպիկ կերպով դուրս քաշում: Սարդի հյուսած ցանցով որսում են նաև թռչուն, չղջիկ և այլ կենդանիներ:

## ԳԻՏԵ՞Ք ՈՐ

Մեկ կիլոգրամ մեղր հավաքելու համար մեղուն կատարում է 120—150 հազար թռիչք, այցելելով հինգ միլիոն ծաղկի: Ամեն մի փեթակում ամռանը ապրում և աշխատում են 50—80 հազար մեղու: Առանց ծաղկափոշու մեղուն կարող է թռչել մեկ ժամում 65 կմ արագությամբ: Եթե նա կարողանար անընդհատ թռչել, ապա 23 օրում երկրագնդի շուրջը պտույտ կկատարեր:

Հայաստանում մեղվաբուծությամբ զբաղվել են 2000 տարի առաջ:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի 1-ին էջը՝ Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ


**Խմբագրական կոլեգիա**

ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս. (խմբագիր), ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՄԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս. (գեղարվեստական խմբագիր), ՕՀԱՆՅԱՆ Ա.:

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06

ՎՖ 07980, Պատվեր 778, Տիրաժ 5000: Տպագրական 4,5 մամուլ: Ստորագրված է տպագրության 26 VII 1957 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան, 91: Գինը 2 ռ.



## ՈՐՔԱ՞Ն Է ԿՇՌՈՒՄ ՇԻՇԸ



1



2



3

Կշեռքի ձախ թարի վրա դրված են մի շիշ և մի բաժակ, իսկ աջ կողմում՝ գրաֆին: Ծանրությունը հավասար է (նկ. 1): Բաժակը տեղափոխենք աջ կողմը, իսկ գրաֆինը փոխարինենք ափսեով: Դարձյալ հավասար են կշռում (նկ. 2):

Այժմ վերցնենք շիշը և այն փոխարինենք երկու հավասարակշիռ գրաֆինով, իսկ աջ կշռաթաթի վրայից վերցնենք բաժակը և տեղը դնենք երկու հատ ափսե, որոնցից յուրաքանչյուրի ծանրությունը հավասար է կշռաթաթի վրա եղած ափսեի ծանրությանը (նկ. 3): Դուրս է գալիս, որ երկու գրաֆինը կշռում են այնքան, որքան երեք ափսեն միասին վերցրած:

Շիշը քանի՞ անգամ է ծանր բաժակից:

## ՎԱՐՈ՞Ղ ԵՔ



Այս գծագրի փոքր շրջանակներում 1—7 թվերը տեղադրեք այնպես, որ շառավիղների և շրջագծերի ուղղությամբ դասավորված երեք թվերի գումարը կազմի 12:

## ԻՆՉՊԵ՞Ս Է ՄԵՔԵՆԱՎԱՐԻ ԱԶԳԱՆՈՒՆԸ

Երևան—Լենինական գնացքով մեկնում են ուղևորներ Մարկոսյանը, Պետրոսյանը և Սարգսյանը: Այդպիսի ազգանուններ ունեն մեքենավարը, հնոցապանը և կոնդուկտորը: Հայտնի է, որ 1) ուղևոր Մարկոսյանը ապրում է Երևանում. 2) կոնդուկտորը ապրում է Երևանի և Լենինականի մեջտեղում. 3) ուղևորներից մեկը կրում է կոնդուկտորի անունը և ապրում է Լենինականում. 4) այն ուղևորը, որն ավելի մոտ է ապրում կոնդուկտորի բնակավայրին, քան մյուս ուղևորները, ամսական ստանում է ճիշտ երեք անգամ ավելի աշխատավարձ, քան կոնդուկտորը. 5) ուղևոր Պետրոսյանը ամսական ստանում է 2000 ռուբլի աշխատավարձ. 6. Սարգսյանը (գնացքի աշխատողներից) վերջերս հնոցապանի հետ բիլիարդ է խաղացել և տարել է նրան: Ինչպես է մեքենավարի ազգանունը:

## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

Պիոներ № 6

Լուցկիների օգնությամբ—



Ի՞նչ եք կարծում—*Այն չի կարող լինել, որովհետև 72 ժամ հետո նորից գիշերվա ժամը 12-ը կլինի:*

Չորս մասի—8, 12, 5, 20:

Երկու ագռավ—*Նստած են իրար դիմաց:*

Հանդիպում փողոցում—*Այս հարցին պատասխանելու համար պետք է ուշադրություն դարձնել այն տան համարի վրա, որի մոտ հանդիպել են տղաները: Կենտ թվերով համարակալված տները սովորաբար լինում են փողոցի ձախ կողմում, երբ գալիս ես փողոցի սկզբից, այսինքն № 1 տնից: Ուրեմն № 25 տան ուղղությամբ գնացողը գլխաբաց տղան է: Նա էլ հենց Վարդանն է:*

Քարտեզի առաջ—*1. Բերինգի նեղուցը, 2. Սկանդինավյան և Ապենինյան թերակղզիները:*

Գտնել կենտրոնը—*Գծագրական եռանկյունին տեղադրեք շրջանագծի վրա այնպես, որ C ծայրը համընկնի շրջանագծի մի որևէ կետի հետ (ինչպես ցույց է տրված նկարում) և նշեք D և E հատման կետերը: DE հատվածը կլինի տրամագիծը: Նույն եղանակով գծեք նաև երկրորդ տրամագիծը: Այդ երկու*




*տրամագծերի հատման կետը կլինի շրջանագծի կենտրոնը:*

## ԽԵՂՃ ՄԱԿԱՐԻ ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆԸ

Նկ. Յու. ՉԵՐԵՊԱՆՈՎԻ

1. — Ես ուրախությամբ կտանեի այս երեք պայուսակներն էլ, բայց բժիշկները վճռականորեն արգելում են ինձ ծանրություն տեղափոխել:

2. . . . . . . . . . . . . . . .

3. Հանգստանալիս էլ Մակարը չէր դադարում աշխատելուց:
— Ինչ հիմար մարշրուտ է. բայց ես կգնամ կարճ ճանապարհով:

4. — Տեսնենք, թե ո՞վ շուտ կհասնի:

5. Մի կոշկի կորուստի և հոգեկան հավասարակշռության գնով Մակարը հասկացավ տեղագրական քարտեզի հորիզոնական գծիկների նշանակությունը:

6. Խեղճին տանջում էր սովը, և նա որոշեց կտրել Վանիկի ու Պետյայի ճանապարհը. չէ՞ որ պայուսակների մեջ կարող է ուտելիք լինել:

7. Այժմ ամենագլխավորն է՝ որոշել ուղղությունը: Հյուսիսը՝ դա ճիշտ և ճիշտ կացնի կողմն է: Սա էլ խաչմերուկ է: Դեպի այնտեղ, դեպի ուտելիք:

8. — Ա՜յ քեզ փորձանք, դա ոչ թե խաչմերուկ է, այլ՝ գետ:
Բայց վրդովմունքը շուտ անցավ. որովհետև մյուս ափին գյուղ կար:

9. Մարդիկ, բնակավայր, ուտելիք, այժմ ինձ լավ կկշտացնեն, — գոչեց Մակարը և անմիջապես մտավ ջուրը:

10. Մակարը կես մետր էլ չկարողացավ առաջ գնալ. լող տալ չէր իմանում և ստիպված եղավ ետ վերադառնալ:
— Ու-ու-ու-րիշ ճր-ճր-ճան-ճանապարհով կանցնեմ...

11. Մակարը միայնակ էր ու լքված, և ոչ ոք նրան չասաց, որ չորացնելու համար լուցկիները պետք չէ խրել մազերի մեջ:

12. — Շշմած, ես մոռացել եմ, որ պահածո ունեմ: Բայց ինչո՞վ բացեմ տուփը:

13. Հարված...

14. Մակարին չհաջողվեց յուրացնել այն մեթոդը, որով արծիվը ջախջախում է կրիային:

15. ... Մի հարված ևս:
Ցավոք սրտի այդ հարվածը ճակատագրական եղավ և տուփի մեջ կորչեց քաղցած Մակարին:

16. Մթնեց: Մակարը անմիտ հայացք նետեց քարտեզի վրա: «Գոռալ, — հուսահատ մտածեց նա, — բայց ո՞ւմ: Գոռալը ինչո՞վ կօգնի այս ամայի վայրում, թավուտ անտառի մեջ»:

17. Մակարը դողում էր ծառի վրա: Բայց հանկարծ նրա ականջին անորոշ ձայներ հասան, և ծառերի արանքից ինչ-որ կրակներ երևացին: «Կամ ավազակներ են քեֆ անում, կամ գայլեր են գալիս» — վշտահար մտածեց նա:

18. Երկար որոնելուց հետո, պիոներները տառապյալ ճանապարհորդին գտան իրենց ճամբարի մոտերը: Ծափահարություններ չեղան: